# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

## № 9 • 1983

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ



Շապիկը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ





ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

# ՋՈՆ ՀԱՐԱԶԱՏ ԴՊՐՈՑԻՆ

Դու՛ մեր դպրոց սիրասուն,
Մեսրոպախո՛ս վարժարան,
Մեծանում ենք քո ներսում
Դասարանից-դասարան:

Մեծանում ենք զանգից զանգ,
Սնվում լույսով քո անգին,
Քո դռնից ենք մտնում կյանք,
Տալիս այդ լույսը կյանքին:

Քո շնչով ենք հանդիպում
Հայոց մեր հին մեծերին.
Դո՛ւ ես, դո՛ւ ես մեզ կապում
Մեր մայր լեզվի գանձերին:

Թող միշտ զնգա զանգը քո,
Դասի կանչի նորերին,
Թող ընդունի հարկը քո
Նաև մեր թոռն ու ծոռն:

Եվ նորերո՛վ, լավերո՛վ
Դու մանկանաս անդադար,
Միշտ գերազանց նիշերով
Փոխադրվես դարից-դար:

# ՏԵՍԻԼ

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Առավոտ վաղ հագա երկարաճիտ կոշիկներս, վերցրի պայուսակս ու գնացի սունկ հավաքելու: Գարնան թարմ ու ծիծաղկոտ առավոտ էր՝ լավ էր սկսվել օրը: Այդ ծիծաղկոտ առավոտվա ու սպասվող լավ օրվա մեջ, ես գնում էի սունկ հավաքելու: Դեռ երեկ երեկոյից էի պատրաստվել: Ճիշտն ասած, պատրաստվելու բան էլ չկար, բայց ամբողջ օրը այդ մտքով էի կլանված: Ախր շատ լավ բան է սունկ հավաքելը: Գնում ես դաշտերով, բլուրներով, գնում ես նայելով աջ, նայելով ձախ, հեռու-մոտիկ բլուրներին: Եվ ահա, դիմացի բլրի վրա, թփի կողքին, մի սունկ է սպիտակին տալիս: Աստիճանաբար արագացնում ես քայլերդ, հետո սկսում վազել: Մոտենում ես, հանում դանակդ, և սունկը քեզ աչքով է անում: Հենց նոր է դուրս եկել: Գետինը ճեղքելով դուրս է եկել՝ գլուխը հողոտ, առողջ, սպիտակ: Կռանում ես, զգուշորեն կտրում, վերցնում ափիդ մեջ, շնչում հողի բույրը: Եվ այդ հաճույքը երկար շարունակվում է, մինչև հաջորդ սնկի հայտնվելը: Երբեմն էլ կողք-կողքի մի քանի սունկ են լինում, մի ամբողջ ընտանիք... Իսկ չորս կողմ թռչունների երգն ու նվագն է, գետինը թմբկահարող, ելքի դուռը փնտրող ծիլերի, ծաղիկների քրքիջը, պայթող բողբոջների փափսոցը: Իսկ երկնքից կախվում է արևագույն շատրվանը և երբեմն իջնելով, երբեմն բարձրանալով, հեռու սարերի փեշերով, նժույգների նման վարգում են փետրավոր ամպեր: Ու քիչ է մնում երկինքն այդ ծիծաղկոտ օրվա մեջ անձրևի:

Գյուղից դուրս եկա, մտա դաշտերը: Գիշերը ցող էր նստել կանաչների վրա: Թռչունները, թիթեռները, մեղուները հա-

ճույքից ճչալով, ցող էին խմում կանաչների, ծառերի տերևների վրայից: Կովերը փնչացնելով լիզում էին թաց կանաչները:

Դաշտերով անցա, հասա բլուրներին: Ահա առաջին սունկը: Վազեցի դեպի բլրի ստորոտը... Եվ այդ վազքն ինձ տարավ բլրից բլուր, բացատից բացատ: Օրն աննկատելի անցավ: Բլուրների շղթայով, բարձրանալով իջնելով, սկսեցի վերադառնալ: Հանկարծակի անձրև սկսվեց, տաք, մաքուր: Հեռու բլուրների վրա վարգող փետրավոր ամպերն էին: Քայլերս արագացրի: Պատսպարվելու տեղ չկար՝ անտառից հեռացել էի: Սկզբից օձիքս բարձրացրի, պայուսակը պահեցի գլխիս: Բայց երբ վերջնականապես թրջվեցի, ամեն ինչից ձեռք քաշեցի ու հանդարտ քայլերով գնացի առաջ:

Անսպասելի, ականջիս երգի ձայն հասավ. աղջիկներ էին երգում: Զարմանքից կանգ առա: Ձայնն ավելի որոշակի լսվեց՝ աջ կողմի բլուրներից էր: Քայլեցի դեպի այնտեղ: Բարձրացա հաջորդ բլրի գագաթը և ինչ տեսնեմ՝ երեք աղջիկ, բլրագագաթի փոքրիկ տափարակի վրա, հովանոցը պահած գլխներին, երգում ու պարում են: Հորդ, գարնանային անձրևին երեքով մեկ հովանոցի տակ:

Հովանոցը նրանց բոլորովին էլ չէր ծածկում, ոտքից գլուխ թրջված էին: Նուրբ շրջազգեստները թրջվել, կպել էին բարալիկ, ձիգ մարմիններին, բայց ուսերի նման ուրախ թռչկոտելով, երգում էին, ու երգը սավառնում էր, ուրախություն ու հրճվանք շաղ տալիս բլուրների, դաշտերի, լողացած կանաչների վրա...

Ես մոռացա և՛ անձրևը, և՛ սունկը:

— Է-հե՜յ...— կանչեցի ստուգելու համար տեսածս իրականությու՞ն է, թե՞ աչքիս է երևում:

Աղջիկներն առանց ընդհատելու երգն ու պարը, նայեցին իմ կողմը, ձեռքով արեցին: Մոտեցա: Երեք փոքրիկ աղջիկներ էին: Նայեցին ինձ, ժպտացին և շարունակեցին երգել: Անձրևի շիթերը հոսում էին երկար, ուղիղ, ուսերին թափված վարսերի, թաց, մարմնին կպած, բարակ շրջազգեստների վրայով: Իսկ հովանոցը ձեռքից-ձեռք էին փոխանցում, հերթով պահում գլխներին, ապա մոտենում միմյանց, երեքով մտնում հովանոցի տակ: Բայց դա անձրևից պատսպարվել չէր, պար էր, երգի ռիթմին համընթաց:

Անձրևը կտրվելու միտք չուներ: Ես հմայված նրանց էի նայում:

— Ձեզ համար հիմա սունկ կխորովեմ,— ասացի:

Նրանք ժպտալով շարունակեցին երգել ու թռչկոտել: Ես փայտի կտորներ հավաքեցի, չոր խոտ և գրպանիցս հանելով լուցկին, սկսեցի կրակ վառել: Անձրևը խանգարում էր: Աղջիկներն երգելով մոտեցան, հովանոցը պահեցին հանգչող խարույկի վրա, և խարույկն անմիջապես բոցավառվեց: Փայտերը կպան: Ես նորից փայտ ավելացրի և ստացվեց մեծ խարույկ: Աղջիկներն ուրախ երգելով սկսեցին պարել խարույկի շուրջը: Պայուսակիցս հանեցի ամենամեծ, ամենագեղեցիկ սունկերը և դրեցի կրակի շեղջի վրա: Մեր կրակն այնքան ուժեղացավ, որ անձրևն այլևս չէր կարող հանգցնել, իսկ փետրավոր ամպերի մեջ գոյացած բարակ ջրհորդանով, երկնքից երկրի վրա էին թափվում արևի շեկլիկ ճառագայթները:

Խարույկը բոցկլտում էր, սունկերը խորովվում էին: Նրանց կարմիր ափսեները աստիճանաբար լցվում էին հյութով: Ես այլևս չկարողացա զսպել խենթությունս, մոտեցա աղջիկներին և սկսեցի երգել նրանց հետ: Փոքրիկ աղջիկն ինձ փոխանցեց հովանոցը: Անձրևն արդեն դադարում էր: Դիմացի սարը ողողվել էր արևի ոսկով:

— Ի՞նչ եք անում այստեղ,— հարցրի աղջիկներին, երբ հոգնած ընդհատեցին պարը:

— Չե՞ք տեսնում գառները... Գառներ ենք արածեցնում:

— Գառներ...— ծիծաղեցի: Նրանք նույնպես ծիծաղեցին: Ճիշտ է, բլրի լանջին գառներ էին արածում, բայց չհավատացի, թե նրանք սովորական աղջիկներ են:

Չհավատացի, որովհետև երբ սկսեցի նրանց հետ երգել ու պարել և երբ փոքրիկ աղջիկն ինձ փոխանցեց հովանոցը, մտովի տեսա, թե ինչպես են նրանց երգից արթնանում հողի տակ, ծառերի ճյուղերի մեջ անհամբեր սպասող ծիլերն ու բողբոջները: Ինչպես են, միմյանց կանչելով, պանդխտությունից վերադառնում կռունկները, և մարդիկ նայում են կապույտ երկնքով թռչող երամներին ու սրտները ճմլվում է ինչ-որ անհայտ, անբացատրելի կարոտից:

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՈՒԶՈՒ՞Մ ԵՍ ՔԵԶ ՀԻՇԵՆ

«Թե ուզում ես, որ քեզնից հետո մարդիկ քեզ հիշեն՝ զավակ ունեցիր, տուն կառուցիր, դաշտ մշակիր ու ծառ տնկիր»:

Սա հայկական ժողովրդական ամենահին թևավոր խոսքերից է: Մարդկային կյանքը հարատև դարձնելու, հոգևոր հարըստությունը հետնորդներին փոխանցելու և հայրենիքը շեն ու գեղեցիկ դարձնելու մի նշանաբան է սա, որով անհա հազարամյակներ ի վեր առաջնորդվում է մեր ժողովուրդը:

Ծառ տնկելու սովորությունը շատ հեռվից է գալիս: Ծառը կանաչ հուշայուն, հիշատակարան է, դիմացկուն արձան, որ կարող է տնկել ամեն մարդ: Ծառը բարիքի աղբյուր է. օդը մաքուր է պահում, պահպանում է հողի վերին շերտը հողմահարումից, հով է անում մարդկանց, փայտ է, շինանյութ:

Հին Հայաստանում, գարնանամուտին, մարտի 21-ից մինչև ապրիլի 26-ը եղել է ժողովրդական մի տոն, որի ժամանակ կատարվել են զանգվածային ծառատնկումներ: Այդ տոնին մասնակցել են փոքրիկ տղաներն ու աղջիկները: Նրանք մեծերի օգնությամբ ու խորհուրդներով փոս են փորել, շիվ տնկել ու ջրել: Մատղաշ ծառն ավելի լավ է արմատակալում, երբ մատղաշ ձեռք է դիպչում, ասում էին մեր պապերը, նրանք հասկանում էին, որ ծառ տնկող մանչն ու աղջնակը, հարյուր տարի էլ անցնի, չեն մոռանա ո՛չ իրենց տնկած ծառը, ո՛չ էլ հայրենի հողն ու տունը: Ծառ տնկող մարդն այդ վայրի հետ կապվում է անջնջելի հիշողությամբ:

Միջնադարյան Հայաստանում ամոթանք էին ստանում նրանք, ովքեր կտրում էին թեք լանջերի վայրի ծառերը, որովհետև

դրանք սահանքներից պաշտպանում էին հողի վերին՝ թանկարժեք շերտը:

Ծառի մասին հետաքրքրական շատ պատմություններ կան: Ծառը մեղմում է մարդու բնավորությունը, թև տալիս նրա երազանքին: Պատահական չէ, որ նշանավոր են դարձել և ուխտատեղիների վերածվել Շեքսպիրի թթենին և Վիրգիլիոսի շիրիմի դափնին: Այդպիսի ծառեր կան նաև Հայաստանում: Ամսագրի հաջորդ համարներում ձեզ կպատմենք հին Հայաստանի Սոսյաց, Ծննդոց, Խոսրովի և Հացյաց Դրախտ նշանավոր անտառների մասին:

Աղստևի հովտում 5-րդ դարի կեսերին Վարդան Մամիկոնյանը մի կաղնի է տընկել, որ կանաչ է մնացել 15 դարից ավելի: Կաղնին մի քանի անգամ հրդեհի է ենթարկվել ու մնացել կանգուն: Գետին է տապալվել մի քանի տարի առաջ միայն: Ուշագրավ է, որ ընկած ծառի կողքին, հին ծառի շիվից նոր ծառ է տընկել Սովետական Միության մարշալ Հովհաննես Բաղրամյանը: Խորհրդանշական է, այնպե՞ս չէ, թե ինչպես են հարատևում երկու հայ մեծ զորավարների անվան հետ կապված կաղնիները:

Իջևանի շրջանում է գտնվում Գոշավանքը, որտեղ ապրել է միջնադարի մեծ մտածող ու առակագիր Մխիթար Գոշը: Ասում են՝ նա իր առակները գրի է առել մի հսկա կաղնու տակ, որպեսզի դրանք կաղնու պես երկար կյանք ունենան: Գուցե պահպանվե՞լ է այդ կաղնին: Դրանով կարող են զբաղվել Իջևանի շրջանի Գոշ գյուղի դպրոցականները:

Ղափանի շրջանի Ծավ գյուղի մոտ սոսիների մի պուրակ կա, որն իր տեսակի մեջ միակն է աշխարհում: Սա Սյունյաց աշխարհի հրաշալիքն է: Այդ պուրակի հետ կապված շատ զրույցներ կան: Ցանկալի է, որ դրանք գրի առնեն Ղափանի շրջանի դպրոցականները և ուղարկեն խմբագրությանը:

Լեռնային Ղարաբաղի Ինքնավար մարզի Մարտունու շրջանի Սխտորաշեն գյուղի մոտ կա մի չինարի, որը Սովետական Միության տարածքում գտնվող ամենատարեց և ամենաբարձր ծառն է: Չինարին երկու հազար տարեկան է: Նրա շվաքի տակ նստել են Մեսրոպ Մաշտոցը, Մովսես Խորենացին, Սայաթ-Նովան, Րաֆֆին: Ղարաբաղի դպրոցականները պետք է որ հետաքրքրական զրույցներ լսած լինեն այդ մասին: Ցանկալի է, որ գրի առնեն և ուղարկեն մեզ:

ԳԱԳԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ

# ԴԱՐԱՎՈՐ ՍՈՍԻՆ

Ո՛չ երկինքը երկնեց,
Ո՛չ եղեգնիկը կարմիր,
Ո՛չ էլ ծովը ծիրանի...
Երկրի վրա մեր այս հին,
Օջախում մի հայաշեն
Ծնվեց մի օր մի մանկիկ...
Մանկիկ էր նա հողեղեն,
Թխաչվի ու թխահեր,
Ու ճակատի վրա լայն
Լույսի շող էր ճառագել:
Ժպտում էր նա ինքնիրեն
Աչիկներով երկնահուն...
Ու մեծացավ ժպտալով
Դարձավ մի այր իմաստուն,
Մարդուն առավ ափի մեջ,
Երկա՛ր, երկա՛ր մտորեց...
Ու դառնացավ,
Ծիծաղեց...
Շատ թերի է դեռ, ասաց,
Կատարյալը մարդու մեջ...

# ՋՈԿԱՏԻ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱ՞Հ, ԹԵ՞ ՎԱԶՔԻ ՉԵՄՊԻՈՆ





## ՊԻՈՆԵՐ-ԴՊՐՈՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

Կարինեն անընդհատ շտապում է: Անվերջ վազվզում է: Ընկերները հաճախ նույնիսկ ծաղրում են. «Մեր ջոկատի խորհրդի նախագահը վազքի չեմպիոն է»: Իսկ Կարինեի գործերը շատ են. պատի թերթ պետք է լույս ընծայվի, ինքն է գրում նյութերը, ինքն է ձևավորում կամ խնդրում մայրիկին: Թղթի թափոնը քիչ է հավաքվել, Կարինեն է, եղբոր սրամիտ խոսքով՝ «ընկնում դռնեդուռ»: Դասընկերը «երկուս» է ստացել, ինքը պիտի... ուսուցչուհուն խնդրի բավարար նշանակել, թե չէ ինչպե՞ս կլինի. ընկնում է առաջադիմության տոկոսը: Իսկ «երկու» ստացողը առանձնապես մտահոգված չէ, տարեվերջում նախագահին պիտի քննադատեն: Գրական երեկո է կազմակերպվում, ինքը պիտի դասընկերներին համոզի, խնդրի, թե, գիտեք, միմի քառյակ անգիր սովորեք, արտասանեք... Եվ այդպես շարունակ:

Ծանոթ պատկեր է, այնպես չէ՞: Ջոկատի խորհրդի նախագահը ամբողջ տարին այսպես վազվզում է, իսկ նիստերին ու հավաքույթներին ելույթ ունենալիս ասում.

— Ջոկատը թերթ է լույս ընծայել... Ջոկատը հավաքել է.. Ջոկատը կազմակերպել է...

Տանը հաճախ մեղադրում են Կարինեին. «Ինչու՞ պետք է միայն դու աշխատես: Խորհրդի անդամները ի՞նչ են անում, ինչու՞ չեն օգնում: Դասերդ չես հասցնում»:

Իսկ Կարինեն իսկապես չի հասցնում: Բոլոր դասերն էլ կարդում է, հանձնարարությունները կատարում, բայց թռուցիկ, արագ, մակերեսորեն: Գնահատականները, ճիշտ է, բարձր են, բայց ոչ առանց ուսուցիչների օգնության:

Անկեղծ ասած՝ հիշեցի Երվանդ Օտյանի «Որ մենք հերոս» պատմվածքը: Նույնությունն այն է, որ երկուսն էլ իրենց անունից խոսում են շատերի մասին: Ես ներողություն եմ խնդրում Կարինեից, այս համեմատության համար. գեղարվեստական գործի հերոսը ոչինչ չանելով էր այդպես խոսում: Բայց զուգահեռը շատ էր գայթակղիչ, որովհետև հիշեցի մի ուրիշ Կարինեի, որը միայն հրամաններ էր արձակում, անընդհատ բողոքում իր ընկերներից ու նախագահի պարտականությունները պատկերացնում քննադատելու և մեկ էլ թղթերը (իր լեզվով՝ «տնտեսությունը») մաքուր պահելու մեջ:

Մի Կարինեն, ուրեմն, աշխատում է ամբողջ ջոկատի համար, իսկ երկրորդ դեպքում ամբողջ ջոկատն է աշխատում մեկի համար: Բայց ինչու՞ մեկի համար, կըհարցնեք, չէ՞ որ ջոկատը իր պատվի համար է լավ աշխատում: Այդպես է: Բայց երբ հավաքույթում Կարինեն խոսեց՝ դասընկերները ներքուստ դժգոհ էին շատ: Իսկ նա ասում էր.

— Ես կազմակերպեցի... Ես կատարեցի... Ես տնկեցի... Ես մաքրեցի...

Եվ այսպես, արդեն դուք նույնպես ճանաչում եք երկու Կարինեներին: Ո՞վ է ճիշտ աշխատում, ձեր համակրանքը ու՞մ կողմն է: Ի՞նչ խորհուրդներ, ցանկություններ ունեք: Գրե՛ք, մենք սպասում ենք ձեր նամակներին:

**ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ**

## ՖՈՒՏԲՈԼԻ ԽԱՂ՝ ԵՐԿՈՒ ԳՆԴԱԿՈՎ

— Գնդակներից մեկը մերն էր, մյուսը № 5 ԲՇԳ-ի ֆուտբոլի թիմինը,— պատմում է Երևանի Սպանդարյանի շրջանի № 6 ԲՇԳ-ի ֆուտբոլի թիմի ավագ Տիգրանը,— պարտվող թիմը պետք է «զիջեր» իր գնդակը... Դե, մենք բոլորովին էլ մտադրություն չունեինք զրկվելու գնդակից...

Մակեդոն Ավետիսյանը մասնագիտությամբ մարզիչ չէ և ոչ էլ ֆուտբոլիստ է եղել: Երկար տարիներ աշխատում է իբրև էլեկտրիկ: Բայց որքան էլ զարմանալի է, նրա ղեկավարած թիմը միշտ հաղթանակներ է տանում: Ո՞րն է գաղտնիքը...

— Ինձ թվում է, որ մարզիչի առաջին խնդիրը իր սաներին գնդակի հետ վարվելու հնարքներին ծանոթացնելը չէ միայն, կարևորը կոլեկտիվ ստեղծելն է, որպեսզի յուրաքանչյուրն իրեն զգա կոլեկտիվի հավասար անդամ, գնահատի բարեկամությունը, երբեք չմեծամտանա, հարգի հակառակորդին:

Թիմի բոլոր տղաների հայացքներում կարդում եմ, որ համամիտ են Արայի հետ:

## ԽԱՂԱՀՐԱՊԱՐԱԿԻՑ ՎԵՐԱՑԱՆ ԱՎՏՈՏՆԱԿՆԵՐԸ

— Վերջերս մեր բակում (Սվերդլովի փող. № 1) քանդեցին ավտոտնակներից մի քանիսը,— պատմում է Հակոբը,— մենք՝ բակի երեխաներս, շատ ուրախացանք: Ավտոտնակները զբաղեցնում էին մեր խաղահրապարակի տարածության մեծ մասը: Բացի այդ, ավտոտնակների մոտ խաղալ էլ չէր կարելի, վայ է թե գնդակը կպչեր ավտոմեքենաներին կամ... թեկուզ ավտոտնակին... նույնն էր թե՝ կահույքի կպավ... Մի խոսքով, լավ եղավ, որ քանդեցին: Անցնում էի քանդված ավտոտնակներից մեկի մոտով, տեսա, երկու առաջին դասարանցի քափ ու քրտինք մտած, երկաթե ձողով այսակի են ջարդում: Այդ օրը մեր դասարանը մետաղի ջարդոն էր հավաքում, և ես ամբարձիչի բավականին ծանր մետաղյա անիվ էի տանում դպրոց: Խնդրեցի առաջին դասարանցի տղաներին օգնել ինձ: Համաձայնեցին: Մետաղյա ձող անցկացրինք անիվի մեջ, որի մի կողմից հպարտ-հպարտ քայլում էին երեխաները: Առաջին անգամ էր, որ նրանք մետաղի ջարդոն էին հավաքում...

— Մենք էլի կբերենք,— բաժանվելիս խոստացան նրանք:

## ՈՒ՞Մ ԲԱԿՆ Է ԳԵՂԵՑԻԿ

— Ա՜յ թե կգեղեցկանա մեր բակը,— ուրախացանք մենք, երբ առավոտյան բակ մտան ճիմով բեռնված ավտոմեքենաները: Մենք մեր օգնությունն առաջարկեցինք կանաչապատողներին: Նրանք սիրով մեզ ընդունեցին իրենց բրիգադը: Հետո եկավ ընկեր Անժելան, նա մեր ԲՇԳ-ի մանկավարժն է, ուրախացավ մեր նախաձեռնության համար, ինքն էլ օգնեց մեզ: Հիմա մեր բակը ավելի գեղեցիկ է:

ՊԱՎԵԼ ՂՈՒԿԱՍՅԱՆ



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# ԽՂՃԻ ԽԱՅԹՈՑԸ

Ն. ԱՐՏՅՈՒԽՈՎԱ

— Մայրի՛կ, ինձ համար դպրոցական համազգեստ ու պայուսա՛կ գնեք:

— Դեռ վաղ է դրա մասին մտածելը, Անդրյու՛շա:

— Չէ՛, վաղ չէ՛: Սեպտեմբերի մեկին ես Ժենյայի հետ դպրոց եմ գնալու:

Մայրիկը թոթվեց ուսերը, տատիկը հառաչեց: Իսկ հայրիկը ժպտալով ասաց.

— Եկո՛ղ տարվա սեպտեմբերի մեկին, որդի՛ս: Համազգեստ առնելը դեռ վաղ է, մեկ տարվա ընթացքում դեռ կմեծանաս, իսկ պայուսակը կարելի է նախապես գնել:

— Ո՛չ, ես այս տարի եմ դպրոց գնալու:

— Յոթ տարեկանից են դպրոց ընդունում: Իսկ քո վեցը դեռ նոր է լրացել:

— Ժենյայի դասարանում մի աղջիկ կա, նա վեց ու կես տարեկանից է դպրոց գնացել: Եվ գերազանցիկ է:

— Եթե այդքան ուզում ես, կարելի է պարզել դպրոցում: Առաջ ութ տարեկանից էին ընդունում, հետո սկսեցին յոթից ընդունել,— ասաց տատիկը:

— Այո՛, այո՛,— նրա միտքն ավարտեց Անդրյուշան,— հետո՝ վեց ու կեսից, հետո կսկսեն վեցից ընդունել: Ակսելերացիա է:

— Ի՞նչ, ի՞նչ,— ծիծաղեց տատիկը:

Հայրիկը հարցրեց.

— Իսկ գիտե՞ս, թե ինչ է նշանակում ակսելերացիա:

— Գիտեմ: Երբ մենք՝ երեխաներս, ավելի խելոք ու խոշոր ենք դառնում, քան եղել են մեր,— նա կարկամեց, նայեց հորն ու այսպես ավարտեց,— քան եղել են մեր նախնիները մեր տարիքում:

Այժմ արդեն, բացի Անդրյուշայից, բոլորն էին ծիծաղում:

— Լավ,— ասաց տատիկը,— վաղը կմտնեմ դպրոց, կիմանամ: Ափսո՛ս, որ մեր Ժենյան շուտ չի գալու ճամբարից: Նա, իհարկե, ամեն բան ավելի լավ կիմանար: Ակսելերացիա, հա՞...

Դպրոցում տատիկին ասել էին, որ ընդունում են նաև նրանց, ում յոթը դեռ չի լրացել: Բայց... պետք է զրուցեն երեխայի հետ: Գրել-կարդալ գիտի, բայց այս դեպքում կարևոր է նաև ընդհանուր զարգացումը: Իսկ կարո՞ղ է, արդյոք, այդպիսի պստիկը քառասունհինգ րոպե դասի նստել և ուշադիր լինել:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Դիմումը պետք է անհապաղ տանեն, թե չէ առաջին դասարաններում արդեն տեղ չի լինի:

Երեկոյան հայրիկն սկսեց դիմում գրել: Մայրիկը հարցրեց.

— Իսկ նրա հետ ծնողների ներկայությա՞մբ են զրուցելու:

— Ասացին՝ ինչպես կուզեք:

— Եվ որտե՞ղ, դիրեկտորի աշխատասենյակու՞մ, թե՞ ուսուցչանոցում:

— Ո՛չ, ուղղակի դասարանում, կարելի է գնալ վաղը չէ մյուս օրը, ժամը տասին մոտ: Շատ հաճելի ուսուցչուհի էր, երիտասարդ: Անունն էլ՝ Լյուդմիլա Ալեքսեևնա:

— Լավ,— ասաց մայրիկը,— ազատ օր կվերցնեմ և քեզ հետ կգամ, Անդրյուշա... Ինչո՞ւ ես այդպես նայում: Թե՞ արդեն ցանկություն չունես:

— Մայրի՛կ... Իսկ կարելի՞ է... որ մենակ... զրուցեմ:

Հայրիկը խրախուսական գլխով արեց:

— Կարծում ես, որ մենակ գնաս, ավելի մեծ, ավելի ծանրակշի՞ռ կերևաս: Կարելի է և այդպես: Լե՛նոչկա, օր մի՛ վերցրու:

— Այնուամենայնիվ , դպրոց տատիկի հետ կգնաս,— վճռեց մայրիկը,— տատիկը դիմումը կտա, իսկ ուսուցչուհու հետ կզրուցես ինքնուրույն, իսկական դպրոցականի պես:

— Տատի՛կ, իսկ մայրիկն է՞լ է առաջին դասարանից այդ դպրոցում սովորել:

— Չորրորդ դասարանից է սովորել: Մենք հենց այդ տարին այստեղ տեղափոխվեցինք:

Աշխատանքի շտապելով, մայրիկը պինդ-պինդ համբուրեց Անդրյուշային:

— Ահա՛, երկրորդ որդիս էլ է իմ դըպրոցը գնալու:

Անդրյուշան տատիկի կողքից էր գընում... Դպրոցը շատ մոտիկ էր: Բայց... արդյոք, ստիպված չե՞ն լինելու ետ գնալ, արդյոք, չե՞ն ասի՝ փոքր է, ընդհանուր զարգացումը բավական չէ... Իսկ ի՞նչ բան է ընդհանուր զարգացումը... Է՜հ, պետք է այս մասին խոսեի, երբ Ժենյան Մոսկվայում էր: Ժենյան ուղղակի կմտներ դիրեկտորի աշխատասենյակն ու...

— Սա իմ եղբայրն է, Անդրեյը,— կասեր Ժենյան:— Խնդրում եմ դպրոց ընդունեք:

Դիրեկտորն իսկույն կկանչեր Լյուդմիլա Ալեքսեևնային.

— Սա Ժենյա Սմիռնովի եղբայրն է, ընդունեք առաջին դասարան:— Որովհետև Ժենյային, իհարկե, բոլորը ճանաչում են դպրոցում և կհավատան նրան, որ Անդրյուշան դասի ժամանակ քառասունհինգ րոպե կարող է անշարժ նստել:

— Տատի՛կ, իսկ հիշու՞մ ես, դու պատմում էիր, թե ինչպես մի անգամ իշայծյամներ էին եկել մեր դպրոցը: Նրանք այս ցանկապատի վրայո՞վ էին թռել:

— Ո՛չ, ցանկապատն այն ժամանակ շատ ավելի բարձր, բայց նույնքան անցքաշատ էր, ամեն բան երևում էր... Իսկ ծառերն այն ժամանակ բոլորովին փոքր էին ու բարալիկ:

— Ուրեմն, իշայծյամները դարպասի՞ց էին ներս մտել: Բայց ինչպե՞ս չէին վախեցել, տատի՛կ: Այսքան մեծ շենքեր, այսքան մեքենաներ... Եվ որտեղի՞ց էին եկել:

— Շենքերն այն ժամանակ շատ ավելի քիչ էին: Բոլորովին նոր էր շրջանը: Երբ մենք այստեղ տեղափոխվեցինք, դպրոցից այն կողմ, այն կարմիր շենքից դենը նոր էին սկսել կառուցել: Իսկ այնտեղ, ձախում, իսկական գյուղ էր: Բայց, իհարկե, նույնիսկ Մոսկվայի ծայրակասերում իշայծյամ տեսնելն իրադարձություն էր:

— Ա՞Դ (արտակարգ դե՞պք),— հարցրեց Անդրյուշան:

— Ճիշտ այդպես, արտակարգ դեպք էր:

«Ինչու՞ Անդրյուշան հիշեց դա,— մտածմունքի մեջ ընկավ տատիկը:— ԱԴ: Այո: Իհարկե: Վաղուց էր: Լենոչկան վեցերո՞րդ, թե՞ յոթերորդ դասարանում էր: Պարապմունքները դպրոցում արդեն վերջացել էին: Առավոտյան հենց այնպես զբոսնելու էր գնացել: Եվ հանկարծ տուն է վազում.

— Մեր դպրոցում իշայծյամներ են հայտնվել...

Շտապեցնում է.

— Շու՛տ, շու՛տ, արի տե՛ս: Ասում են՝ դրանք գիշերն են...

Արդեն հեռվից էր երևում, որ դպրոցի բակը շրջապատող ամբողջ ցանկապատին կպած և նույնիսկ կախված են հետաքրքրասերները: Դարպասը փակ է, դպրոցի բակում, միայն դռան առաջ, աստիճանների վրա լուռ մի ամբոխ է կանգնած: Կանգնած են նաև երկու սայլակավոր մոտոցիկլետ և չորս միլիցիոներ: Իսկ բարակ, մատղաշ լորենիների ու հացենիների արանքում, վառ կանաչ, թարմ տերևները կրծոտելով, հանգիստ քայլում են էգ ու արու իշայծյամներն ու սիրուն պոզիկներով մի փոքրիկ իշայծյամ, որն արդեն

այնքան փոքր չէ, բայց դեռ մեծ էլ չէ: Շինությունների ետևում տրոլեյբուսներն ու բեռնատար ավտոմեքենաներն են աղմըկում, իսկ այստեղ՝ անտառի մի կտոր, հեքիաթի մի կտոր՝ մոսկովյան բակում:

Իշայծյամներով բավական հիանալուց հետո Լենոչկան փութով հեռացավ. կինո էր շտապում: Հեռանալիս խորհուրդ տվեց.

— Բա՛կր մտիր, մայրի՛կ, ցանկապատի դռնակից կարելի է անցնել: Շատ հետաքրքիր է:

Իսկ եթե կարելի է և այդքան հետաքրքիր է, ինչու՞ չմտնեմ: Զգուշությամբ բացեցի դռնակը, սողնակը նորից փակեցի ու բակի միջով դեպի դպրոցի դուռը տանող լայն աստիճանների վրա լուռ կանգնած, հիացած նայող ամբոխին թողի, գընացի: Իշայծյամները, թվում էր, թե ոչ մի ուշադրություն չեն դարձնում մարդկանց վրա: Միլիցիոներին հարցրի.

— Ի՞նչ եք մտադիր անել:

— Ոչինչ էլ չենք անելու,— բարեսըրտորեն պատասխանեց նա,— կսպասենք մինչև մթնի ու ճանապարհ կդնենք անտառ:

Հեռանալ չէի ուզում, բայց... ճաշը չէի պատրաստել և պետք է հաց գնեի... Նորից զգուշությամբ փակեցի դռնակն ու գնացի հացի խանութ: Վերադարձիս նորից ուզեցի տեսնել անտառային այցելուներին: Անկյունից թեքվեցի. դպրոցն, ախր, մեզ շատ մոտ էր: Եվ հանկարծ՝ վախեցած ճիչե՛ր, դոփյո՛ւն, ծիծա՛ղ... Ի՞նչ է պատահել... Երիտասարդ իշայծյամը սլանում է դիմացի երկու մեծ շենքերի միջև ընկած նեղ ճանապարհով: Իսկ նրա ետևից եռանկյունու ձևով տարածվել է հիացած, գվվացող ամբոխը: Ամենաարագավազները սուր անկյան ձևով առջևում են, իսկ ետևում ամբոխը գնալով ավելի ու ավելի է լայնանում... Կողքից, աշխատելով զգուշորեն առաջ անցնել ամբոխից, սայլակավոր մոտոցիկլետով սլանում են երկու միլիցիոներ:

Ինչպե՞ս էր փախել այդ երիտասարդ խելառը: Թռել էր ցանկապատի վրայո՞վ: Չափազանց բարձր է: Թե՞ պատահաբար բացվել էր դարպասը: Կամ իր մատղաշ պոզերով տեղից հանել էր դռնա՞կը: Եվ ինչո՞ւ էր փախել: Իր ինքնուրույնությու՞նն էր ուզեցել ապացուցել: Այսինքն, թե ուզենամ, առանց հայրիկի ու մայրիկի կզբոսնեմ այս անծանոթ քաղաքու՞մ:

Խե՛ղճ: Հիմա արդեն նա, իհարկե, վախեցել է, բայց ուշ է, կանգ առնել չի կարելի: Քառատրոփ՝ ուղիղ դեպի Լոմոնոսովի պողոտան է սլանում, իսկ այնտեղ մեքենաների, տրամվայների այնպիսի՜ մի շարժում է... Ախր, կտրորեն քեզ, ե՛տ դարձիր:

Ճռնչալով կանգ առավ տրամվայը: Լուսամուտի ապակու ետևում վագոնավարի գունատ դեմքը երևաց: Վախեցած արգելակում են վարորդները: Իշայծյամը, իսկ նրա ետևից սրտացավ ամբոխը, կտրեցին լայն պողոտան ու անհետացան դիմացի երկու բարձր շենքերի արանքում:

Շատ մեղք էր անզգույշ իշայծյամը: Եթե նույնիսկ ոչ մի բանի տակ չընկներ, սիրտն ուղղակի կարող էր չդիմանալ:

Իսկ հետևյալ օրը «Իշայծյամները Մոսկվայում» վերնագրով մի կարճ հաղորդում կարդացինք թերթերում, որը հայտնում էր, թե քաղաք են եկել երեք իշայծյամ և բարեհաջող կերպով իրենց հարազատ անտառը վերադարձել:

«... Ինչո՞ւ Անդրյուշան հանկարծ այդ արտակարգ դեպքը հիշեց, մտածում էր տատիկը: Գուցե նա՞ էլ վախեցավ, ինչպես այն խիզախ իշայծյամը»:

Բակի բարձր, փառահեղ լորենիներն ու հացենիներն իրենց կատարներն այժմ երրորդ հարկին էին հասցրել... Բակում և աստիճանների վրա ոչ ոք չկար: Դըպրոցն էլ, կարծես, բոլորովին դատարկ է:

Այո, Անդրյուշան արդեն վախենում էր: Առաջ էլ էր պատահել, որ նա, եղբորն ուղեկցելով, դպրոց էր եկել: Բայց այն ժամանակ դպրոցը կյանքով էր լցված: Տղաներն ու աղջիկները, թե՛ մեծ, թե՛ փոքր, իրար կանչելով, խոսելով, լայն հոսանքով դարոցի դռնից ներս էին լցվում, դեպի հանդերձարան շտապում... Ժենյային, ինչպես միշտ, մտերմական ժպիտներով էին դիմավորում:

— Ի՞նչ է, Ժե՛նյա, եղբորդ դպրո՞ց ես բերել: Մի տե՛ս՝ ի՜նչ քաջն է: Սա՞ էլ մեր չորրորդ «Ա»-ում պետք է սովորի:

— Ի՞նչ ես ասում: Անդրյուշան յոթերորդ «Բ»-ում է սովորում, մի՞թե չգիտես:

Նրանք կատակում էին, ծիծաղում, բայց դա վիրավորական չէր: Անդրյուշան գիտեր, որ Ժենյայի եղբորը ոչ ոք չէր կարող նեղացնել: Ժենյային բոլորն էին սիրում: Չէին կարող եղբորը չսիրել:



Իսկ հիմա... դպրոցը միանգամայն դատարկ է: Ընդարձակ ու լուռ: Միայն դռան դիմաց՝ փոքրիկ սեղանի մոտ մի կին է նստած: Ուսուցչուհի՞ է: Հենց սա՞ է զրուցելու:

Տատիկը մի բան հարցրեց նրան:

— Խնդրեմ, եկեք այստե՛ղ:

Նրանք սկսեցին երկրորդ հարկ բարձրանալ: Եվ միանգամայն ակամա տատիկը բռնեց Անդրյուշայի ձեռքը: Սիրալիր ժպտալով նրանց արդեն ընդառաջ էր շտապում մի երիտասարդ ուսուցչուհի:

— Ինձ մո՞տ եք գալիս:

Լուսավոր, ընդարձակ միջանցքում ոչ ոք չկար: Լռություն է: Բայց գուցե այս փակ դռների ետևում քննություններ են տալիս բարձր դասարանցինե՞րը:

Մի դուռ կիսաբաց էր: Լյուդմիլա Ալեքսեևնան ներս նայեց:

— Այստեղ մտնենք:

Տատիկը չգիտեր ինչ աներ: Չէ՞ որ Անդրյուշան մենակ էր ուզում գրուցել: Ասի՝ դե՛, գնա՛, սիրելի՛ս, իսկ ես սպասեմ միջանցքու՞մ: Բաց թողեց Անդրյուշայի ձեռքը: Անդրյուշան նրան էր նայում, դա միայն մի հայացք էր: Բայց տատիկը հասկացավ: Առանց ոչինչ հարցնելու, նա էլ ներս մտավ և հեռավոր նստարաններից մեկին նստեց: Իսկ նստարանները խոշոր էին, ծանրակշիռ. պարզ էր, որ առաջին դասարանցիներ չէին այդ դասարաններում սովորում:

Լյուդմիլա Ալեքսևնան մեկին ասաց.

— Մենք ձեզ չե՞նք խանգարի:

— Ո՛չ, ո՛չ, ամենևի՛ն:

Հեռվում, պատուհանի մոտ նստած էր բարձր դասարանների մաթեմատիկայի ուսուցիչ Պավել Պետրովիչը: Ալեհեր, նիհարավուն, բարձրահասակ՝ նա հազիվ էր այդ նստարանին տեղավորվել: Ինչ որ թղթեր էր ջոկջկում իր պայուսակում և ծոցատետրում ինչ-որ բաներ նշում... Տղաները նրա մասին ասում էին՝ շատ խիստ է:

Տատիկն է՛լ ավելի տագնապեց:

Անդրյուշան ճարպկորեն մագլցեց բարձր նստարանին և իր առջև դրեց ժենյայի հին այբբենարանը և երկու տետր. մեկը՝ գծավոր, մյուսը՝ վանդակավոր: Ուսուցչուհին նստեց դիմացը՝ սեղանի մոտ, խրախուսական հայացք նետեց տետրերին ու ինքնահոս գրչին, որը Անդրյուշան հանեց գրպանից և նույնպես իր առջև դրեց:

— Դե՛,— սկսեց նա,— արի՛ ծանոթանանք: Իմ անունը Լյուդմիլա Ալեքսեևնա է: Իսկ քո՞նը:

— Անդրեյ Սմիռնով,— հատ-հատ արտասանեց Անդրյուշան:— Հայրանունս պե՞տք է:

— Պետք չէ,— թեթև ժպտալով պատասխանեց Լյուդմիլա Ալեքսեևնան:

Տատիկը նկատեց, որ Պավել Պետրովիչն առանց գլուխը թեքելու Անդրյուշային նայեց և, կարծես, հետաքրքրությամբ սկսեց ականջ դնել:

Անդրյուշային տարօրինակ թվաց, որ ուսուցչուհին չհարցրեց նրան:

— Դու չորրորդ «Ա»-ի Ժենյա Սմիռնովի եղբա՞յրն ես:— Մի՞թե չի ճանաչում Ժենյային... Գուցե նո՞ր ուսուցչուհի է, միայն վերջե՞րս է սկսել աշխատել մեր դպրոցում:

— Քանի՞ տարեկան ես: Ծննդյանդ օրը ե՞րբ է:

Անդրյուշան պատասխանում էր հստակ, ո՛չ բարձր, ո՛չ էլ ցածր:

— Տեսնու՞մ ես, քեզ համար մի քիչ վաղ է այս տարի դպրոց ընդունվելը:

— Ժենյայի դասարանում մի աղջիկ կա: Նա վեցուկես տարեկանից է դպրոց գնացել: Գերազանցիկ է:

— Գրել-կարդալ գիտե՞ս:

Անդրյուշան բաց արեց ու աշխույժ կարդաց այբբենարանի պատահական մի էջ:

— Մի բա՛ն գրիր:

Մեծ խնամքով գրեց. «հայրիկ, մայրիկ, տատիկ, Ժենյա»: Սա՝ գծավոր տետրում: Իսկ մյուս՝ վանդակավոր տետրում թվերի մի երկար շարք գրեց: Երեսունհինգի վրա Լյուդմիլա Ալեքսեևնան նրան կանգնեցրեց:

— Իսկ որքա՞ն կլինի հինգին հինգ գումարած:

Հարցերը հետևում էին մեկը մյուսին: Անդրյուշան պատասխանում էր: Տատիկն զգում էր, որ նա արդեն հանգստացել է, էլ չի վախենում, վստահ է իր վրա: Եվ ինքն էլ սկսեց հանգստանալ:

— Իսկ հիմա,— ասաց Լյուդմիլա Ալեքսեևնան,— այսպիսի մի խնդի՛ր լուծիր. դու երեք խնձոր ունեիր, մեկը քրոջդ տվեցիր: Քանի՞ խնձոր քեզ մնաց:

Անդրյուշան չպատասխանեց: Նա, լուռ ու զարմացած, ուսուցչուհուն էր նայում: Տատիկն էլ զարմացավ: Ի՞նչ պատահեց: Ինչու՞ Անդրյուշան կարմրեց, հոնքերը կիտեց ու նստեց: Ուսուցչուհին էլ էր շվարել:

— Ուրեմն, ինչքա՞ն կլինի: Բոլորովին էլ դժվար խնդիր չէ. դու երեք խնձոր ունեիր: Մեկը քրոջդ տվեցիր...

Պավել Պետրովիչն էլ, կարծես, ուշադրությունն լարեց, նույնիսկ գլուխը շրջեց ու սկսեց հետաքրքրությամբ նայել:

Լյուդմիլա Ալեքսեևնան ակնհայտորեն վշտացած էր:

— Ուրեմն, ինչպե՞ս, Անդրյու՛շա... Երեք խնձոր... Մեկը քրոջդ ես տվել:

Նա ուզում էր օգնել Անդրյուշային, բայց չգիտեր, թե ինչպես անի: Այնքա՛ն լավ էր պատասխանում բոլոր հարցերին: Եվ ընդհանուր զարգացումը...

— Մի խնձորը քրոջդ ես տվել...,— կրկնեց նա:

— Ես քույր չունեմ,— վերջապես արտասանեց Անդրյուշան:

Եվ բոլորը թեթևացած շունչ քաշեցին՝ և՛ տատիկը, և՛ Լյուդմիլա Ալեքսեևնան, և՛ պատուհանի մոտ նստած ալեհեր ուսուցիչը:

— Լավ,— աշխատելով չժպտալ, ասաց Լյուդմիլա Ալեքսեևնան:— Դու այստեղ «Ժենյա» ես գրել և Ժենյայի դասարանի աղջկա մասին էիր խոսում: Ես էլ կարծեցի, թե Ժենյան* քո քույրն է:

— Ժենյան իմ եղբայրն է,— հպարտ պատասխանեց Անդրյուշան:— Ժենյա Սմիռնովը:

— Լավ, այդ դեպքում այսպես անենք. դու երեք խնձոր ունեիր, մեկը եղբորդ ես տվել: Քանի՞սը մնաց քեզ:

Եվ կրկին Անդրյուշան չպատասխանեց: Սա արդեն շատ տարօրինակ էր: Տատիկը հազիվ էր իրեն զսպում, նա ուզում էր հրել, տեղից շարժել նրան:

— Մի խնձորը եղբորդ ես տվել,— արդեն համարյա հուսահատությամբ նորից սկսեց Լյուդմիլա Ալեքսեևնան:

— Բայց ինչպե՞ս կարող եմ Ժենյային մի խնձոր տալ, իսկ ինձ երկուսը վերցնել: Ես երբեք այդպիսի բան չեմ անի:

Այժմ արդեն, առանց հարցնելու, բոլորն էին ժպտում:

— Իսկ ի՞նչ կանեիր, Անդրյու՛շա:

— Մեկը կտայի Ժենյային, մյուսը ինձ կվերցնեի, իսկ երրորդը կկիսեինք:

Լյուդմիլա Ալեքսեևնան ու տատիկը ծիծաղեցին: Իսկ բարձրահասակ, ալեհեր ուսուցիչը, որը մաթեմատիկա էր ավանդում բարձր դասարաններում, մոտեցավ Լյուդմիլա Ալեքսեևնային և շատ լուրջ ասաց.

— Ես գտնում եմ, որ այս տղային կարելի է ընդունել առաջին դասարան: Դեռ յոթ տարեկան չկա, բայց արդեն կարողանում է կոնկրետ խնդիրներ լուծել:

Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

---

*) Ժենյան թե՛ արական Евгений, թե իգական Евгения անունների կրճատ ձևն է:

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## Գ. «ՓՍԿԱԿԱՆ ՄՈՒՄԻԱ՝ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ»

Հին արևելքի համարյա բոլոր հեղինակները մի այսպիսի լեգենդ են պատմում սպեղանի-մումիայի հայտնագործման մասին. իբրև թե Իրանի Ֆարիդուն արքայի զինվորները որսի ժամանակ հալածում են մի եղնիկի ու նետով վիրավորում մեջքը: Եղնիկը շարունակում է փախչել: Երկրորդ նետը խոցում է ոտքը: Ծանր վիրավորված եղնիկը մի կերպ հասնում է մի խոր քարանձավ ու անհետանում նրա խորքերում: Որսորդները ձեռնունայն վերադառնում են: Մի շաբաթ հետո նրանք տեսնում են այդ նույն եղնիկին, նետը մեջքին իր համար խոտ արածելիս, ասես ոչ մի բան չէր պատահել: Որսորդներին հաջողվում է այս անգամ նրան կենդանի բռնել և նայել վերքին: Տեսնում են վերքի շուրջը քսված ինչ որ սև, խեժանման նյութ: Մտնելով քարանձավ, որսորդները գտնում են այդ նույն նյութը, հավաքում ու տանում են իրենց արքային: Ֆարիդունը հրամայում է իմաստուններին հետազոտել քարանձավը և նորահայտ խեժի հատկությունները: Իմաստունները պարզում են. քարանձավի ճեղքերից հոսում է ինչ-որ սև նյութ, որը կտցում են թռչունները և լիզում կենդանիները, բուժելով իրենց հիվանդությունները և հատկապես վերքերն ու կոտրվածքները: Ֆարիդունը կարգադրում է քարանձավի մուտքի մոտ պահակներ կարգել, իսկ պարբերաբար հավաքած խեժը տանել իր գանձարանը: Քարանձավը, որը գտնվում է Իրանի հարավում, կոչվում է Դառաբ, իսկ այդտեղից հանված խեժը՝ մումիա-դառաբի (դառաբիի մումիա):

Բժշկապետներն ու գիտնականներն Արիստոտելից սկսած իրենց խոսքն են ասել մումիայի մասին: Ավիցեննան քարանձավային մումիան համարում է աշխարհի ամենաարդյունավետ դեղը, որը հատկապես վերքերն ու կոտրվածքները բուժելիս հրաշագործ հատկություն է ցուցաբերում:

1967 թվին ՍՍՀՄ առողջապահության մինիստրությունը մումիան պաշտոնապես ճանաչեց որպես արժեքավոր դեղամիջոց և թույլատրեց նրա գործածությունը կլինիկաներում:

Լեռներր բարձրացող առաջին լուրջ գիտնականները գլխի ընկան, որ մումիան առաջանում է կենդանիների ու թռչունների արտաթորանքից, իսկ ածխածնային մեթոդը մումիայի տարբեր նմուշների տարիքը գնահատեց մի քանի հարյուրից մինչև հազար տարի:

Երբ մենք իմացանք մումիայի հրաշագործ հատկությունների մասին, սկսեցինք մեզ մոտ՝ Հայաստանում էլ որոնել: Մեկ էլ տեսար գտնվեց: Հանից պարզվեց, որ հենց միայն Հայաստանում մումիա անունով մի քանի նյութեր կան. կտավհատի ձեթն ու մոմը իրար են խառնում, որ այրվածքներ բուժեն, անունը մումիա են դնում: Խաչքարերի վրայից մոմերի այրվածքը քերում են ու խմեցնում հյուծախտով հիվանդներին, դրան էլ են մումիա ասում: Ներկ են վաճառում, մումիա է, Թալինի Հացառատ գյուղում թոնրի կավ են հանում, մումիա է: Բայց իսկական մումիան չկար ու չկար: Լողները ծիծաղում էին. Հայաստանում մումիա՞, մումիան Միջին Ասիայից են Հայաստան ներմուծում:

Իսկապես «սև» շուկայում Պամիրից ու Տյան Շանից բերած իրական ու կեղծ մումիայի աշխույժ առևտուր էր գնում: Հայաստանում մումիա դեռ հայտնաբերված չէր, բայց մենք առանց հույսները կտրելու որոնում էինք «մեր» մումիան, խնամքով խուզարկելով ժայռերի ու քարանձավների ճեղքերը:

Մի լրիվ տարի ման եկանք, մինչև որ բախտը ժպտաց մեզ: Օրերից մի օր իջանք մի անմատչելի քարանձավ, պարանները հավաքեցինք ու արդեն հեռանում էինք, ամենավերջին րոպեին աչքս ընկավ մի փոքրիկ քարանձավխորշի: Նրա թեք հատակին ծաղկակաղամբի նըմանվող սև մազութի գծեր էին կպած:

— Այս մազութը որտեղի՞ց եկավ քարանձավ,— մտածեցի ես ու մի փոքր կըտոր գցեցի բերանս: Տեսա որ հալվում է: Մազութ լիներ, չէր հալվի:

«Մումիա է,— կայծակեց մտքումս,— ո՞նց միանգամից գլխի չընկա»:

— Տղե՛րք, եկե՛ք, մումիա՛ գտա,— ուրախացած կանչեցի ես:

Տղերքը եկան նայեցին ու զարմացան: Ախր ամենքս մի տասը-քսան անգամ անցել էինք դրա մոտով, ո՞նց չէինք նըկատել: Ուրախացանք ու մի փոքր կտոր պոկելով գնացինք: Մի կտորն էլ հերիք էր դրա իսկությունը հաստատելու համար:

Մտանք հաջորդ ձորը: Մինչև քարանձավում քնելու տեղ պատրաստեցինք, սկսեց մթնել:

— Դուք ջուր բերեք ու ճաշ եփեք, ես գնամ տեսնեմ, թե այն ինչ քարանձավ է երևում,— ասացի ես Մասիսին ու Արամին և բարձրացա քարափը:

Բարձր առաստաղով նեղ ու երկար քարանձավ էր: Մի ժամանակ քարայծերը վերացել էին, բայց գոմաղբը մնում էր: Ընդհանրապես ոչ մի բանով աչքի չընկնող, ոչ մի բան չխոստացող քարանձավ էր: Բայց մեկ էլ աչքս ընկավ խորքի թեք հարթակին: Դա իսկական մումիայի ծննդավայր էր, որ կար: Հետագայում մենք այն անվանեցինք «մումիայի կենդանի գաղութ»:

Շուտով մեր անձնավագիտական կենտրոնին միացան նաև գիտությունների ակադեմիայի քիմիական ֆիզիկայի ինստիտուտը և Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտը: Ստեղծվեց մումիայի հետազոտման հայկական կենտրոնը: Մեզ մոտ և Շաքիրովի ինստիտուտում կատարած անալիզները հաստատեցին հայկական մումիայի իսկական լինելը: Կես տարի հետո մենք տպագրության ուղարկեցինք առաջին աշխատությունը՝ «Իսկական մումիա Հայաստանում»: Այդ աշխատությունում մենք մոդելավորել էինք մումիայի առաջացման փուլերը և նրա առաջացման արագությունը: Մումիայի աճի հետազոտման գաղափարը շատ խոստումնալից էր, բայց մեզ միշտ մի ուրիշ հարց էլ էր հուզում, գտնել գոնե մի «կենդանի գաղութ», որի տարիքը ճշգրիտ հայտնի լինի:

— Եթե մի անգամ հասունացած ողկույզի տակ հին դրամ գտնենք՝ տարիքը տեղնուտեղը կիմանանք,— երևակայությանը զոռ տալով երազում էինք մենք:

Արի տես, որ համարյա այդպես էլ եղավ: Մի անգամ հետազոտում էինք արհեստական քարանձավների մի մեծ համալիր: Համալիրը ժամանակին մի երկար խուլ միջանցք է ունեցել, որը արևի երես չէր տեսնում: Պատմական հիշատակություններից ստույգ հայտնի էր, որ այս համալիրը ավերվել է 1701 թվի երկրաշարժի ժամանակ: Հենց այդ ժամանակ էլ միջանցքի վերևի մասը փլվել է ու արևը սկսել է լուսավորել պատը: Արևի շողերի տակ 180 տարվա ընթացքում այդ պատին առաջացել էին մումիայի գնդիկներ, դըրանք առանց արևի երբեք չէին առաջանա: Ահա և քեզ մումիայի նմուշի ծննդյան ճշգրիտ վկայականը:

Հայաստանի նորահայտ մումիայի քիմիական, բժշկական ու կենսաբանական հետազոտումից բացի, մեզ մի հարց էլ էր հուզում. մի՞թե հայկական աղբյուրները ու ավանդությունները ոչինչ չեն ասում տեղական մումիայի մասին: Դժվար էր

պատկերացնել: Ճիշտ է, մեծ բժշկապետ Ամիրդովլաթ Ամասիացին (16-րդ դար) ասում է, թե Հայաստանում էլ Արևելքի մյուս երկրների նման տարածված է եղել մումիան, բայց նրա «քարանձավի մոտ է, որ մումիա է լինում» արտահայտությունը չի հուշում, թե ո՞ր քարանձավի մասին է խոսքը՝ Դառաբայի, թե՞ իր հայրենի Ամասիա քաղաքի հռչակավոր քարանձավների:

Բոլորովին վերջերս գտանք առաջին ուղղակի տեղեկությունները Հայաստանի մումիայի մասին: Վաղարշապատցի Հարություն Արարատյանը, որը 1813 թվին Պետերբուրգում հրատարակում է «Հարություն Արարատյանի կյանքն ու արկածները» գիրքը, Հայաստանի քարանձավներից մեկի մասին գրում է. «Նրանցից մեկում քարերի մեջ ես գտա բավականին շատ մի տեսակ խեժային սևագույն նյութ: Այս նյութից ես փոքր ինչ վերցրի, հանկարծ տեղը նորը դուրս եկավ: Սրանից կարելի է եզրակացնել, որ այս նյութը այստեղ շատ առատ է»:

Խոսքը քարանձավային մումիայի մասին է: Ճիշտ է, պոկածի փոխարեն ճեղքից նոր բաժին դուրս գալը ոչ թե շատության, այլ ծավալվելու՝ ուռչելու հետևանքով է, բայց կարևորը դա չէ: Գրքի թարգմանիչ Պերճ Պռոշյանը ծանոթագրության մեջ նշում է. «Այս նյութը ժողովրդական լեզվով կոչվում է մումիա: Ժողովուրդը հալում է ջրի մեջ և խմեցնում վախեցածներին»:

Պռոշյանի հաղորդածը ընդամենը 140 տարվա հնություն ունի: Հետաքրքիր էր. իսկ այսօր Հայաստանում չե՞ն օգտագործում տեղական մումիան: Զարմանալի զուգադիպությամբ վերջերս մի հեռավոր գյուղից մի անծանոթ ծերունի հողված բերեց անձնավաճգիտական կենտրոն: Այդ հողվածը վկայություն էր մեր օրերի Հայաստանում մումիայի օգտագործման փաստերի մասին: Մինչդեռ երբ ես մումիայի մասին զեկուցում էի գիտությունների ակադեմիայում, մի ալեհեր գիտնական՝ և հին ալպինիստ, հարցրեց.

— Ես մեր լեռներում տեսել եմ, թե ինչ են մարդիկ հրացանով կրակում քարերից կախված սև ողկույզների վրա, ցած գցում և խմեցնում ստամոքսի հիվանդներին ու կոտրվածք ունեցողներին: Մի՞թե դա մումիա է եղել:

— Ամենաիսկականը,— անվարան պատասխանեցի ես:

ԱՆԱՀԻՏ ԴԱՌԱՄՅԱՆ

ԳՐԻՐ
ՄԵՐ
ՄԱՍԻՆ

Խշրտոց թեթև,
Կամացուկ շշուկ,
Երազանքի թև,
Աղավնու փետուր,
Պոկված, հին կոճակ,
Տատիկի ակնոց,
Մոռացված նկար,
Փոքրիկ օրորոց:
Նրանք բոլորը
Ականջիս շշում,
«Գրիր մեր մասին»,—
Ինձ են աղերսում,—
«Գրիր, ամենքս
Հեքիաթ ենք մի-մի,
Մի՛ մոռանա մեզ,
Տես, որ կանցնի...»:

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

# Պապն ու պապի պապը

Խունկի պապը իր պապից ի՞նչ հիշի, որ լավ լինի: Ինչ հիշի, չհիշի, իր պապի մի արդար, դուրալի ծեծը մտից գցելու չի: Մի անգամ պապը Խունկիին շատ փափուկ, դուրալի ծեծեց, քնաբեր ծեծ էր, բարի ծեծ: Պատճառն էլ ի՞նչ էր. Խունկին ջահելակռիվ էր արել: Տվել, մեջտեղից գլուխ էր ճղել: Պապն իմացավ, կանչեց Խունկիին, ականջները լավ ձգեց, ասաց՝ էնքան ձգելու եմ, մինչև ականջներդ իշի ականջ դառնան: Հետո շատ խաղաղ տեսքով նախապատրաստվեց ծեծի: «Բա ամոթ չի՞,— ասաց,— որ ինձ գործից կտրում ես, որ քեզ ծեծեմ, հը՞...»: Ասաց ու ծոծրակախառը մի հատ հասցրեց: Երևի սիրտը չտարավ, ասաց. «Էդ

կավի կուլի գոլացած ջուրը տար էն ծառին տուր, գնա Սառնաղբյուրից սառը ջուր լցրու, երեսիդ էլ մի երկու բուռ ջուր խփի, կուլեն առ ու արի: Թքում եմ, մինչև թուքըս չորանա՝ գաս...»: Խունկին կավի կուլի գոլացած ջուրը տվեց ծառին, գնաց Սառնաղբյուր, երեսին մի երկու բուռ ջուր տվեց, կուլեն սառը ջուր լցրեց, ինչպես պապն էր ասել, սառը ջրով կուլեն առավ ու եկավ: Պապը վառված էր երևում, կուլեն քաշեց գլխին ու կլկլացնելով խմեց, անուշ խմեց, օրհնեց՝ ջրի չափ երկար ումբրարև ունենաս, Խունկի, ասաց ու հանկարծ, ինքն էլ չհասկացավ, ինչպես, տուր թե կտաս՝ խփեց: Ինքը դեռ պապի օրհնանքն էր վայելում, մեկ էլ պապը սկսեց. «Գլու՞խ ես պատռում, իսկ գիտես, որ էդ գլուխը վաղը մեր ժողովրդին ինչքան է պետք գալու: Հասկանու՞մ ես»: «Ջղայնացած էի, ուժս էլ պատեց, հանաքն էլ շիտակ դարձավ, խփեցի»,— արդարացավ ինքը: «Ուրեմն, դեռ կարողանում ես լեզու հանել ու պտտել, հա՞: Լեզուդ պապդ քոքահան կանի: Լավ ես արել, որ ջղայնացել ես: Ջղայնացած էիր, մոտդ նստեցնեիր ու ջաղացպանի հեքիաթը պատմեիր, ուրիշ որ բան չլիներ, որ մի կում ջուր ու մի փշուր հաց չլիներ, ջաղացպանի հեքիաթը կա ու կա՝ պատմեիր, իրեն էլ լավ, քեզ էլ լավ, լողին էլ: Թե դրանից հետո չհանգստանայիր, գայիր ինձ ասեիր...»: «Ես ջաղացպանի հեքիաթը չգիտեմ»,— ասաց Խունկին լացի միջից: Պապը զարմացած նայեց: «Ո՞նց թե ջաղացպանի հեքիաթը չգիտես»,— ավելի ջղայնացավ պապը:— Ո՞նց է գլուխ պատռել գիտես, իսկ ջաղացպանի հեքիաթը չգիտես»: Կանչեց մոտը, մոտմոտիկ նստեցրեց: Էնքան մոտ, որ պապի շունչն էր շնչում, պապի շունչը մորուքի միջից լցվում էր իր քիթ-բերանը, լցվում էր ծոցը: Պապը վերցրեց կավե կուլան, մեկնեց իրեն, ասաց՝ խմիր, մեծավարի խմիր, ջաղացպանի նման մորուքիդ, կըրծքիդ թափելով խմիր, ասաց՝ ա՛յ շատ ապրես, որ կարողանում ես մեծ մարդու նըման ջուր խմել, ուրեմն՝ ինչ ասեմ՝ հասկացի՛ր: Ջաղացպանի հեքիաթը չգիտես՝ սովորեցնեմ,— ունքերը խճճեց ու հավաքեց պապը:— Պապերն ապրում են նրա համար, որ թոռներին աշխարհի ուրիշուրիշ սիրուն հեքիաթներից առաջ ջաղացպանի հեքիաթը սովորեցնեն: Բոլոր հեքիաթներից ամենահեշտը ջաղացպանի հեքիաթն է: Բայց որ ջաղացպանի հեքիաթը ջաղացում չլսվեց, համը փոխում է: Ես էստեղ ասեմ, դու ջաղացում ասած ու լսած հասկացիր: Լսի՛ր»: Խունկին ականջները բացեց, որ լսի, լացը ներս գցեց, արցունքները կուլ տվեց: Իսկ պապը պապավարի կոկորդ-մոկորդը մաքրեց շատ կարևոր հըմ-հըմ արեց, բազմանշանակ նայեց վերև, աչքերը պահեց հողին ու սկսեց ջաղացպանի հեքիաթը, որը չսկսվեց՝ «լինում է, չի լինում» և չվերջացավ «երկնքից ընկավ երեք խնձոր ու նրանք հասան իրենց մուրազին, դուք էլ հասնեք ձեր մուրազին...»:

Պապը ջաղացպանի հազար անբառ հեքիաթ գիտեր: Այդ հեքիաթներում էլ ձիեր կային, որոնք ոչ թե թռչում էին սարից սար, այլ հանգիստ, խաղաղ գնում էին ջաղաց՝ աղուն էին տանում, որոնք ոչ թե քաջերին մութ ու լույս աշխարհներ գցելով, ի վերջո, անց էին կացնում հաղթանակի մազե կամրջով, այլ հանգիստ, խաղաղ ջաղացից ալյուր էին բերում տուն, փռշտում էին ալյուրի տաք հոտից... Պապը ջաղացպանի հեքիաթները տեղնուտեղը հորինում, ասում էր:

Ափսո՛ս, պապն էլ գնաց: Հեքիաթները սերմի նման շաղեց հոգիներում ու գնաց...

## Պապն ու պապի թոռը

— Օ՜ֆ, պապի՛ ջան,— կուզիկ մեջքը շտկեց ծերունի Խունկիանոսը,— վայ թե անբանություն եմ անում, էսօր ինձ նման չեմ,— ասաց ինքն իրեն:

Ծերունի Խունկիանոսը այգու ծառուղիներում, մեղվի գվվոցի մեջ ուզում է տեսնել իր ծանրձեռք ու բարի պապին, բայց չի կարողանում, պապի պատկերն աչքին չի գալիս: Պապի պատկերի փոխարեն աչքն ընկավ իր գլխարկին: Էս ո՞վ է կատակ արել, իր գլխարկը դրել դդումի վրա: Սազում էլ է: Էդ ե՞րբ են դրել՝ չի տեսել: Բայց կարո՞ղ է ինքն է դրել: Գլխարկը իր տակի դդումի բաժին արևը խլել է, ինքը չի դեղնել, խանձվել է, տակի դդումը խեղճացած կլինի: Հետո տեսավ, նայեց, շուրջը մարդ չկա, ծերունական մի բարի ծիծաղ խճճվեց աչքերի դեմ, ինքն իր համար կատակ արեց.

«Գլխարկ է, էլի, իմ գլխին, թե դդումի վրա, ի՞նչ տարբերություն»: Բայց դդումը պետք է կարմրի, դեղնի: Նորից նայելով դդումին, գլխարկին, Խունկին մտածեց, որ մի բացբերանի ինքը կպատմի, թե չի հիշում ում հետ է էսպես բան պատահել: Նա էլ ծաղկեցրած մի ուրիշին կպատմի... Էն ուրիշն էլ ուրիշին: Լավ էլ կանեն՝ կըպատմեն կասեն աքորեցի մեկի հետ է պատահել: Ղալաչեցիները եղածը կդնեն աքորեցիների վրա, իսկ աքորեցիները ապրում են էս հողի երեսին նրա համար, որ ինչքան հանաք ու շիտակ կա, առնեն իրենց վրա, դարձնեն իրենցը ու ոչ մեկին չտան: Իրենցն է, իրենք էլ պահում են: Դդումները չլինեին, որոշ մարդկանց էդ դեպքում ինչի՞ հետ կհամեմատեին: Բայց դա իր գործը չէ: Իր գործը հիմա ծառերին նայելն է, աչքերով նրանց շոյելը, նրանց գուրգուրելը, ինչպես թոռ երեխայի: Իր գործը բաց փեթակի տանիք-գլխարկը դնելն է, նորից եկող-գնացող, բանող մեղուներին նայելը: Փուքսի բերանը բացել էր՝ փակեց, որ հանգչի: Իր գլխարկը թափ տվեց ու դրեց իր գլխին, քայլ արեց, նորից գնաց դդմաշարի գլխին կանգնեց, վերցրեց իր խունձված գլխարկը, տարավ արևածաղիկների շարի արանքում դրված խրտվիլակի հին գլխարկը փոխեց: «Տոնական օր է, բարով մաշես»: Նոր գլխարկը դդմավարի էնպես բութ ու տիրական նայեց, որ ոչ մի թռչուն չէր համարձակվի թռչել, գալ, թե ինչ է՝ փորձում եմ Խունկիանոսի այգուց մի երկու կտուց բան փախցնեմ: «Էս գլխարկն էլ իր տեղը գտավ»,— գոհ ասաց ծերունին ու մտածեց, թե արևը դեռ չի մտել, դեռ երկընքի մեջտեղն էլ չի հասել, ուրեմն հարկավոր է մի գործ գտնել... «Պարապ մարդու օրը կտրվի»: Ինչ լա՜վ էր առաջ, արևը դեռ դուրս չեկած՝ իրար ձեն էին տալիս. «Ա՜յ տնաշեն, օրը ճաշ դառավ, իսկ դու դեռ հորանջում ես: Օրը հատավ, հանգավ, իսկ դու դեռ ճմլկոտում ես»: Օրը օր էր: Օրը լիքն էր:

Շոգի մեջ խեղդվելով ծորում էր մեղուների դեղին երգաբլվոցը: Խունկին հանկարծ սրտնեղեց, քաղաքի թոռանը հիշեց, հիշեց նրա արարմունքը ու սրտնեղեց: «Էդ շան տղա քաղաքի թոռանն էդքան ասի՝ ձայնագրի էս գվվոցը, ես կգնամ, էլ էսպես համ ու հոտով գվվոց չես ճարի: Կճարես, բայց պապիդ մատը խառը չի լինի: Պապէդ շունչը հետը չի լինի: Բռնել է էս աշխարհի տակին ինչքան ճղավող-բղավող կա, մեջտեղից պատռվող կա, գլուխ տանող կա, նրանց է ձայնագրում: Հեռու երկրներ տուրիստ գնացող է ճարում, ասում է՝ էսինչի երգերի ձայնագրությունները բեր, ինչ որ գինն է՝ ես մեկին երկու կտամ: Կտա՛ս, բա չե՛ս տա, հո չե՛ս քրտնել, որ ափսոսաս: Էն անգամ էլ, էս օրվա պես հիշում է, ինչ շարմաղ օր էր սկսվել, ամեն մեկը գիտեր, թե ինչ օր է, մարդն էլ գիտեր, մեղուն էլ, շունն էլ, աքլորն էլ, ծառն էլ, ճամփան էլ... Շարմաղ օր էր. ամեն մեկը գիտեր իր անելիք գործը, կկուն հա կանչում էր, եղնիկի կանչ էլ լսվեց: Արևն էլ լույս էր կաթում ծառերի, աշխարհի, մարդկանց վրա: Մեղվափեթակն էլ հենց տաքացավ՝ սկսեց բանել, ոնց բանել... Դու քո մտքի հետ, քեզ սովոր ձայն ու ծպտունի, լռության հետ, մեկ էլ թոռը, դեռ քնաթաթախ, աչքերը չբացած էս աշխարհի համ ու հոտի վրա, էս շարմաղ աշխարհի դեռ մի գույն ու ձայն չհասկացած, միացրեց, անունն ի՞նչ է, էնպես էլ ուժեղ միացրեց, որ դժվժոցը կապեց այգու գլխին, տան գլխին, իր գլխին... Լավ հիշում է էդ օրը: Դժվժոցը թոռը հենց կապեց, հարևան Սերոբը ձայն տվեց.

— Խունկի՞...

— Հա՛մմե...

— Էդ ի՞նչ տրաքոց է:

— Թոռս է եկել:

— Քեզ համար ուրիշ լավ բան չի՞ բերել:

— Լավ է, վատ է, ինչ որ տեսնում ու լսում ես, դա է:

— Իրեն ասա, որ մեր ականջը չխլացնի, գլուխ չցավացնի:

— Ասելը հե՞շտ է, արի դու ասա... Հյուր է ո՞նց ասեմ...

Հյուր է, քաղաքացի, կրթված, ո՞նց ասի, թե աչքիդ վերևը հոնք կա...

Հենց այդ օրն էլ, իրիկնադեմին, երկու ալևոր, մի Խունկի ու մի Ուխտիկ, ուս-ուսի տված, գնում էին հուշարձանի կողմը:

— Խունկի՛, մեզանից ո՞վ է փոքր:

— Փոքրը ո՞րն է, բախտավոր մեզ, երկուսս էլ մեծ ենք:

— Իհարկե, բախտավորություն մեզ, որ գոնե մեծացանք: Քանի՛-քանի միլիոն մարդ չի մեծանում, տարիք չի առնում, հեռու չգնանք, հրե՛ն...

Նա գլխով ցույց տվեց հուշարձանի կողմը.

— Քանի՜ հարյուրը հենց մեր գեղից, հենց էս մի կռվին, մեր իմացած երեխեքից, գնացին չեկան...

# ԳԻՇԵՐԱՅԻՆ ԶԱՆԳԵՐԸ

**Խավարում անտես ինչքա՜ն զանգեր կան,**
**Ծլնգում են մեղմ ու մեղմ ղողանջում,**
**Սկիզբ է առնում մի հեքիաթ անծայր,**
**Գիշերվա խորքում:**

**Փողոցի դեղին լույսերի ներքո**
**Մուգ կապույտ ձյունը ճառագայթում է,**
**Լույսեր արձակում.**
**Եվ խավարն այնժամ թվում է երազ,**
**Մի երգող երազ՝ կապույտ մշուշում:**

**Ստվերներն ասես կենդանանում են**
**Ու դողդողում են կապույտ խավարում,**
**Իսկ զանգերն անտես ղողանջում են դեռ**
**Եվ շուրջն ամեն ինչ ոգի է առնում:**

**Խավարում անտես ինչքա՜ն զանգեր կան,**
**Զնգում են անվերջ, անվե՜րջ ղողանջում,**
**Սկիզբ է առնում մի հեքիաթ այնժամ**
**Գիշերվա խորքում:**

ՆԻՆԵԼ ՄԱԻԼՅԱՆ
Արարատի շրջան, գ. Սուրենավան,
10-րդ դասարանի աշակերտուհի



«ԾԱՂՐԱԾՈՒՆ»
ՎԱՀԱԳՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ
Երևանի № 83 դպրոց,
4-րդ դաս.

# ԵՐԳՈՒՄ ԵՆ...

**Երգում է թռչնակը,**
**Երգում անդադար,**
**Իսկ ցածում գետակը**
**Չի առնում դադար...**

**Երգում են նրանք**
**Հրաշքը գարնան,**
**Երգում են սիրով**
**Ու ինքն։ ·մոռաց...**

**Դա գարնան կանչն է**
**Թռչնակի ձայնով,**
**Դա գարնան կանչն է**
**Գետի կարկաչով...**

ՏԻՐՈՒՀԻ ՀԱԿՈԲՅԱՆ
Էջմիածնի շրջ.
Աղավնատուն գյուղի միջն.
դպրոցի 8-րդ դաս.





«ՍԱՍՈՒՆՑԻ ԴԱՎԻԹԸ ԳԱՌՆԱՐԱԾ»
ՄԱՐՈ ՂԱՐԻԲՅԱՆ
Երևան

# Հանելուկներ

Երբ որ դիմացդ ես կանգնում,
Երկու մարդ ես դու դառնում:

(Հայելի)

Երկու փոքրիկ դաշտ,
Մոտը՝ մի-մի տաշտ:

(Երես-ականջներ)

Արև է, շոգ է դրսում,
Նրա մեջ միրգն է մրսում:

(Սառնարան)

ԱՆԱՀԻՏ ՈՍԿԱՆՅԱՆ
Հրազդանի շրջան, գ. Սոլակ
6-րդ դաս.



«ՀՐԵՂԵՆ ՁԻՆ»
«ՀԱԶԱՐԱՆ ԲԼԲՈՒԼ»

ՄԵԼԻՔ ՉԱՓԱՆՅԱՆ
Վրաց. ՍՍՀ,
Բոգդանովկայի
շրջ. Փոկա գյուղի միջն.
դպրոց, 3-րդ դաս.

# ՇԻՐԱԿ



ՍԵՐԳԵՅ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Աշոտ Բագրատունին մեր ժողովրդի պատմության ընթացքում հանդես եկած պետական-ռազմական ամենատաղանդավոր գործիչներից էր: Նա իր հեռատես գործունեությամբ կարողացավ ոչ միայն իր հայրենիքի կորսված անկախությունն ու գահը վերադարձնել ու դառնալ Բագրատունյաց թագավորական հարստության հիմնադիր, այլև երկրի հետագա տնտեսական և ռազմական հզորության հիմքը դրեց: Նրա մահից հետո գահը ժառանգեց որդին՝ Սմբատ Բագրատունին: 892 թ. սա նույնպես խալիֆից թագ, զգեստներ և մեծարժեք նվերներ ստանալով, իր նստավայր և երկրի նոր մայրաքաղաք Շիրակավանում շքեղաշուք հանդեսներով թագադրվեց:

Սմբատ Առաջինի և Աշոտ Երկաթի օրոք, մոտ 40 տարի Հայոց արքայանիստն ու մայրաքաղաքը Շիրակավանն էր: Երկու թագավորներն էլ, քաղաքական վիճակից ելնելով, ավելի շատ գտնվում էին երկրի այս կամ այն գավառում, ավելի շատ լինում էին իրենց երիվարի թամբին, քան արքայական փափկաբազմոց գահին:

# ԱՎԱՆ

Ինչպես Բագարանի, այնպես էլ Շիրակավանի (Երազգավորք, Երազգավորս) մասին պատմիչները շատ քիչ տեղեկություններ են հաղորդում: Եվ քանի որ կանոնավոր պեղումներ չեն կատարվել, ապա դժվար է հատուկենտ հիշատակությունների և մի քանի արձանագրությունների հիման վրա ուրվագծել Հայոց իններորդ մայրաքաղաքի պատմությունը: Ինչպես Բագարանը, այն նույնպես գտնվում էր Շիրակում, Անիից ոչ հեռու, Ախուրյանի աջ ափին:

Այդտեղ բնակավայր է եղել դեռևս մ. թ. ա. III—II դարերում: Այդ մասին է վկայում վրաց մատենագիր Լեոնտի Մրովելին, պատմելով, որ վրաց թագավորն ու հյուսիսային լեռնականները Արտաշես 1-ի օրոք անսպասելիորեն հարձակվում են Հայաստանի վրա, կողոպտում Շիրակավանն ու այլ բնակավայրեր: Սեբեոսի պատմության մեջ՝ 7-րդ դարում այն հիշատակվում է իբրև գյուղ: Այն փաստը, որ 862 թվ. Զաքարիա Ձագեցի կաթողիկոսի գլխավորությամբ գումարված դավանաբանական ժողովը տեղի է ունեցել Շիրակավանում, վկայում է, որ դեռևս աթոռանիստ և մայրաքաղաք դառնալուց առաջ էլ, այն կարևոր բնակավայրերից էր: Պատմիչ Վարդան Արևելցին գրում է, որ Սմբատ Բագրատունին (890—914) Շիրակավանում կառուցել է Ս. Փրկիչ եկեղեցին և այնտեղ էլ օծվել: Ի դեպ, այն կանգուն էր մինչև 1950-ական թվականները: Ավելի ուշ կառուցվել է նաև Ս. Աստվածածին եկեղեցին:

Քանի որ Սմբատ Ա-ի և Աշոտ Երկաթի արքայանիստը Շիրակավանն էր, բնականաբար այն ռազմական տեսակետից պետք է ապահովված լիներ: Շիրակավանում կար ամրոց, պաշտպանական այլ կառույցներ: Շիրակավանի մոտ, նրանից 3 կմ հեռավորության վրա էր գտնվում Տիգնիս նշանավոր ամրոցը: Հետագայում Տիգնիս ամրոցը խոշոր նշանակություն ունեցավ Անիի պաշտպանության համար:

Շիրակավանը XI դարում ավերեցին սելջուկները, բայց ինչպես Բարսեղ եպիսկոպոսի մի արձանագրությունն է վկայում, վերականգնվեց XII դարի երկրորդ կեսին:

Թուրքական տիրապետության շրջանում Շիրակավանը, որ վերանվանված էր Բաշ Շորագյալ, ոչ մեծ գյուղ էր և XIX դարի վերջին ուներ 86 տուն հայ բնակչություն: Գյուղի Սահակյան վարժարանը բացվել էր 1877-ին և ուներ 25 աշակերտ: Արշակ Ասլամազյանը, որ Գերմանիայից իր բերած սարքավորումներով այստեղ ջրաղաց էր կառուցել, ոգևորվում է Անիի պեղումներով ու Մառի խորհուրդներով Շիրակավանում պեղումներ ձեռնարկում և իր հայտնաբերած հնկայական նյութը հավաքում եկեղեցում: Շիրակավանը Թուրքիային անցնելուց հետո այդ նյութերը ոչնչացվեցին և անհետացան:

Շիրակավանի բնակչությունը տեղահանվել է 1920 թ. և մի մասը բնակություն է հաստատել ՀՍՍՀ Ախուրյանի շրջանի Երազգավորս գյուղում:













# Արդյո՞ք ես ընկերասեր եմ

Երևանի № 78 դպրոցի 4-րդ Բ և 5-րդ Ա դասարանների աշակերտների շարադրություններից:

Դպրոց գնալիս ամեն օր Համմիկը իրենց շենքի բակում սպասում էր ինձ, որպեսզի միասին գնայինք: Դասամիջոցներին էլ միշտ միասին էինք: Ամեն մի անհասկանալի հարց ունենալիս միասին էինք դիմում մեր ուսուցիչներին: Մի առավոտ, դպրոց գնալիս չտեսա նրան: Շտապեցի դպրոց: Դասերը վերջանալուց հետո շտապեցի Համմիկենց տուն և իմացա, որ երեկոյան նրան տեղափոխել են հիվանդանոց, կատարել կույր աղիքի վիրահատում: Հայրիկիս խնդրեցի, որ ինձ նրա մոտ տանի: Չմերժեց: Համմիկը վիրահատությունից հետո իրեն լավ էր զգում, բայց չէր կարողանում շարժվել: Ես ամեն կերպ աշխատում էի այնպես անել, որ լավ զգա իրեն:

Օրեր անց Համմիկը դուրս գրվեց հիվանդանոցից, բայց նրան դեռ դպրոց գալ չէր կարելի: Դասերից հետո գնում էի նրանց տուն, միասին պարապում էինք, որ դասերից ետ չմնա:

● Ճամբարում նրան չէին սիրում, որովհետև բոլորին վիրավորում էր: Մի անգամ, երբ ջոկատավարին վիրավորեց, նրան սկսեցինք բացատրել, որ այդպես չի կարելի, բայց նա մեզ էլ վիրավորեց: Այսպես համարյա ամեն օր: Բայց մի անգամ, գնացինք լճակ լողանալու, նա լավ լողալ չգիտեր, սկսեց խեղդվել և օգնություն խնդրել: Մենք վիրավորանքները մոռանալով, օգնության հասանք: Այդ դեպքից հետո նա հասկացավ, թե ինչ վատ բան է ընկերներին վիրավորելը և ներողություն խնդրեց: Մենք ներեցինք, իսկ ինքը վերջ տվեց սրան ու նրան վիրավորանքներ հասցնելուն:

● Ամառային արձակուրդներին հանձնարարված էր կարդալ Պուշկինի հեքիաթները: Գիրքը ես չունեի, խնդրեցի շատերից, ամեն մեկը մի պատճառաբանությամբ մերժեց:

Պառկել էի, բայց քունս չէր տանում, ինձ տանջում էր այն միտքը, թե ինչ եմ պատասխանելու ուսուցչուհուս: Մեկ էլ հնչեց դռան զանգը և ներս մտավ մեր դասարանցի Հայկը՝ ձեռքին ինձ հարկավոր գիրքը: Լսել էր, որ փընտրում եմ, ճարել, բերել էր:

Հայկը ինձ թվաց տեսածս կինոնկարների հերոսներից:

● Ամառային արձակուրդներին մտերմացել էի մի աղջկա, նա մեր բակից էր: Հաճախ էինք միասին խաղում: Մի օր էլ տեսնեմ մեն-մենակ բակում խաղում է, վազեցի մոտը:

— Արի միասի՛ն խաղանք,— ասացի: Նա լռում էր:

— Արի խաղա՛նք,— կրկնեցի ես, իսկ նա դարձյալ չպատասխանեց:

Ես նկատեցի, որ նա ինձ հետ խոսել չի ուզում, բայց ինչու՞, չհասկացա: Չէ՞ որ առաջ մենք այնքան մտերիմ էինք, ինչպես քույրեր: Նա սովորում

է 6-րդ դասարանում, իսկ ես՝ 5-րդ: Երբեմն օգնում էր, որ դասերս լավ պատրաստեմ: Բայց թե հիմա ի՞նչ է եղել, չգիտեմ:

— Գնդակ բերեմ, խաղանք,— ասում եմ, իսկ նա լռում է ու ինձ բանի տեղ չի դնում: Նրա լռության պատճառը ես հանկարծ հասկացա:

Նա կարծում էր, թե արդեն մեծ է և արդեն իրեն վայել չէ փոքրերի հետ ընկերություն անել: Ես շատ տխրեցի, բայց արդյո՞ք ճիշտ է նրա վերաբերմունքը իմ նկատմամբ:

● Ձմեռային արևոտ օր էր: Մենք դուրս եկանք բակ խաղալու: Փողոցը ողողված էր երեխաների ծիծաղով: Ձնագնդի էին խաղում, սահում դահուկներով ու՝ սահնակներով: Հանկարծ Գոհարիկը, որ չմուշկով էր սահում, ընկավ: Մոտեցանք, օգնեցինք ոտքի կանգնել: Նա լաց էր լինում: Ուղեկցեցինք տուն: Տանը ոչ ոք չկար: Ծնողները հյուր էին գնացել: Գոհարիկը լացը չէր կտրում, չէր դիմանում ցավին: Ոտքը ուռել էր: Մենք ոտքին թրջոց դրեցինք և զանգահարեցինք «շտապ օգնություն»:

Երբ բժիշկը եկավ, եղելությունը իմանալով ասաց.

— Ապրե՛ք, երեխանե՛ր, ընկերասեր եք երևում:

Ուշ գիշեր էր, երբ Գոհարիկի ծնողները վերադարձան: Տեսնելով Գոհարի ոտքի վիրակապն ու մեզ՝ վախեցան: Հետո զգվեցին մեզ ու շնորհակալ եղան:

● Մի անգամ ես, Իսակը, Սամվելը գնացինք գետը: Ձուկ բռնեցինք, լողացանք և իրիկնադեմին, երբ ձորից ելանք, որ գանք տուն, ես որոշեցի ուրիշ ճանապարհով գնալ: Շատ չէի հեռացել, երբ տեսա Իսակին և Սամվելին տղաները ծեծում են, որ ձկնորսական ցանցերը ձեռքներից առնեն: Ես վազելով գնացի օգնության: Երբ ընկերներս տեսան, որ տղաները իմ դեմ դարձան, ինձ մենակ թողնելով փախան:

Մի՞թե դավաճանություն չէ սա:



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ընկերներին շուրջն հավաքած,
Խոսում է նա քիթը տնկած։
— Ձեզ մեծ բան է թվում, ասենք,
Գառնարածը.
Ի՞նչ մեծ բան է իր արածը.
Ուսապարկում պանիր-հացը,
Որ կողմ նայես դաշտն է կանաչ,
Խոտերի մեջ
Է՛լ նունուփար, վարդ ու կակաչ,
Ճերմակ, դեղին, կապույտ, կարմիր,
Աղբյուրն էլ հենց աչքիդ առաջ,
Ինչքան ուզես կեր ու խմիր։
Գառնուկներդ էլ թող արածեն,
Ի՞նչ է անում գառնարածը.
Մի ծառի տակ խոր քնած է.
Գո՞րծ է անում...
Ձեզ որ մնա,
Անգամ չնչին փայտահատով
Կզարմանաք.
Ծառ կտրելը ի՞նչ մեծ բան է,
Կացինը առ,
Մտիր անտառ,
Որ ծառը որ դուր է գալիս՝
Կտրիր ու տար։

2

Այսպես խոսքը խոսքին տալով,
Ինքը իրեն հավատալով,
Ձեռ է առնում սրան-նրան.
— Դատա՛րկ բան է
Ձեր այդ գոված երկրաբանը,
Մեկ տեսնում ես ժայռի վրա,
Մեկ խոր ձորում,
Այստեղ փորում, այնտեղ փորում,
Կարծես ինչ-որ բան է կորել՝
Ո՛նց չէ, գտա՛վ,
Լայն բաց արեք ձեր գրպանը,
Երկիրն արար ծով գանձերով
Պիտի լցնի երկրաբանը,—
Ու ձեռքն էլի թափ է տալիս.
— Դուք ի՞նչ գիտեք,
Շատ քիչ գիտեք.
Դրա համար զարմանում եք.
Չե՞ք իմացել,
Մեկն, ասում են, իր նավակով
Օվկիանոսն է կտրել-անցել,
Ի՞նչ կա այստեղ զարմանալի.
Բարեհաջող քամի լինի,
Նավակն հարմար,
Օվկիանոսներն այս աշխարհի
Հարյուր անգամ
Գնամ ու գամ,—
Լողները ծիծաղում են.



ՄԻՔԱՅԵԼ
ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

— Ա՜յ դու կեցցես...
— Դու հերոս ես, չենք իմացել...
— Չկա քեզ պես քաջ նավաստի...
Իսկ նա կարծես
Հավատում է այդ ասվածին.
— Ի՞նչ մեծ բան է հերոս լինել,
Որ ուզենամ,—
Ու մտածեց, ի՞նչ ուզենա,—
Որ ուզենամ,
Ես կդառնամ
Տիեզերքը հետախուզող մեծ օդաչու։
— Բայց այդ ինչպե՞ս...
— Ինձ էլ դնեն հրթիռի մեջ
Սարքին-կարգին,
Ու կրակեն, ուզեմ-չուզեմ
Պիտի թռչեմ, պարզ է, երկինք։
Գիտեմ այնտեղ ինչ են անում.
Արբանյակի թոկը գտնում,

Հեշտ ու հանգիստ,
Երբ ուզում են, ներս են մտնում,
Երբ ուզում են դուրս են գալիս:
Օրերն անցան,
Իջար երկիր, հերոս դարձար:
Ուրիշ մի օր տարած-բերեց
Հայտարարեց.
— Գիտե՞ք,— ասաց ընկերներին,—
Ախր ոչինչ դուք չգիտեք,
Ի՞նչ ասեմ ձեզ,
Հայրիկիս հետ,
Գնացի ես ցուցահանդես...
— Այդ ի՞նչ բան է:
— Ճիշտ, որ ասեմ,
Զարմանալի ոչինչ չկար,
Նկարներ են.
Մեկը-մեկից մե՜ծ, կամ փոքրիկ,
Մտածեցի,
Կարևորը ոչ թե ձեռքն է,
Այլ հենց ներկը.
Դու վրձինը տար վեր ու վար,
Մեկ էլ տեսար դարձավ նկար:
Ճանապարհին հայրս տարավ
Ընկերոջ մոտ՝ արվեստանոց:
Սա ի՞նչ մարդ է— քանդակագործ.
Քարին նստած քար է տաշում,
Չիմացողն էլ ասում է՝ «Խե՜ղճ,
Մի տես մարդը ինչ է քաշում»:
Ով էլ առնի մուրճն ու տաշի,
Մուրճն էլ, որքան ծանր լինի,
Քարը այնքան շուտ կմաշի.
Կամ քարն ի՞նչ է, որ դիմանա,
Մի երկու զարկ ձախից, աջից,
Վերջը պիտի արձան դառնա:

3

Սակայն մի օր
Պետիկն իրենց տնից հանկարծ
Այնպես գոռաց,
Շենքը թնդաց:
Ընկերները հավաքվեցին
Եվ ի՞նչ տեսան.
Կծկվել է Պետիկն այնտեղ,
Լաց է լինում:
Մոտիկ պատին երևում է
Հենց նոր թխած-ծռված մի մեխ.
— Անտեր մեխը...— Պետիկն ասաց,—
Ո՞նց չգնաց...
Մուրճով ուժեղ ես խփեցի,
Ու բութ մատս տակը մնաց:
Դասացուցակն ուզում էի
Խփել պատին,.
Մեխը թողած
Հարվածն իջավ ուղիղ մատիս..

# ԱՄԵՆԻՑ ԿԱՐՃ ՀԵՔԻԱԹԸ

(Գվինեա)

— Մայրի՛կ, կարո՞ղ ես դու ինձ պատմել,
Աշխարհի հեքիաթն՝ ամենից կարճ:

— Աչքերդ փակի՛ր, որ քեզ պատմեմ
Աշխարհի հեքիաթն ամենից կարճ.

Արևն ոսկի է,
Լուսինն արծաթ
Եվ մարգարիտ են աստղերն ու սաթ...

— Մայրի՛կ, արև եմ ուզում ոսկի:
— Քոնը կլինի արևն, անգի՛ն,
Եթե դու ազնիվ լինես կյանքում:

— Մայրի՛կ, լուսին եմ ուզում արծաթ:
— Քոնը կլինի լուսինն, անգի՛ն,
Եթե դու համեստ լինես կյանքում:

— Մայրի՛կ, աստղեր եմ ուզում սաթե:
— Քոնը կլինեն աստղերն, անգի՛ն,
Եթե դու բարի լինես կյանքում:

— Արդեն տանում է քունս, մայրիկ:
— Քնի՛ր, իմ ազնի՛վ, համե՛ստ, բարի՛...

Փոխադրեց
ԳԵՎՈՐԳ ԷՄԻՆԸ

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵԶՕՂԼՅԱՆԻ

Երևանի Կիլիկիա և Աջափնյակ թաղամասերը կապող երթուղու այն հատվածում, որտեղից երևում են «Հրազդան» մարզական համալիրի բացօթյա խաղահրապարակները, տեղադրված են թիրախներ, որոնք առանձնացված են մյուս մարզաբազաներից և իրենց երփներանգությամբ աչք են շոյում: Օրվա որոշակի ժամերի սպիտակ համազգեստներ հագած աղջիկներն ու տղաները այստեղ ծանոթանում են նետաձգության արվեստին, կատարելագործում իրենց վարպետությունը, պատրաստվում ելնելու մեծ սպորտի ուղեծիր:

Իսկ ընդամենը հինգ տարի առաջ ճանապարհի այս մասում փարթամորեն աճում էր վայրի խոտը: Եվ ահա, 1978-ին շարք մտավ Երքաղսպորտկոմիտեի նետաձգության մասնագիտացված դպրոցը, որի ղեկավարն է փորձառու մարզաշխատող Հմայակ Նահապետյանը: Մարզօջախի ստեղծումն անհրաժեշտություն էր, քանի որ դիպուկ նշանառուների մարզանքը լայն տարածում էր ստացել երկրում, տեղ էր գտել օլիմպիական խաղերի ծրագրում և, ամենակարևորը, հմայիչ էր:

Ո՞վ չի հիացել Ռոբին Հուդի և Վիլհելմ Տելի անվրեպ նետաձգումներով, ո՞վ չի հպարտացել բռնակալ Բելի դեմ ազատատենչ Հայկի տարած հաղթանակով:

Այս հերոսներին նմանվելու ցանկությամբ էլ պատանի տղա-աղջիկ համալրեցին նորաստեղծ դպրոցի խմբերը, որոնց թիվն այսօր հասել է յոթի և ընդգրկում են 110 մարզիկների: Հընգամյա մարզադպրոցի ինը նետաձիգներ այսօր սպորտի վարպետության թեկնածուներ են:

Պետք է տեսնել, թե ինչպես են Նունե Աբրահամյանի, Արմեն Աղասարյանի, Սամվել Բաղոյանի, Կարեն Հակոբյանի արձակած նետերը սլանում դեպի թիրախների կենտրոնները: Ցավոք, դպրոցը առայժմ չունի ձմեռային նետաձգարաններ, տարվա այդ եղանակին նետաձիգները պարապում են մայրաքաղաքի Ջերժինսկու և Մռավյանի անվան դպրոցների մարզադահլիճներում, «Սպարտակի» և «Դինամոյի» մարզասրահներում:

Ահա մարզումի ժամն է: Կողք կողքի կանգնած աղջիկների ու տղաների ձեռքերում ասես քարանում են աղեղները: Որպեսզի արձակած նետերը չվրիպեն, նախ ձեռքերդ չպետք է դողան և հետո՝ աչքաչափդ պետք է չխաբի: Մարզիկները զինվել են հեռադիտակներով. նպատակակետը ճիշտ թիրախի կենտրոնն է՝ 10 միավոր: Թռչում են նետերը, և մարզիչի սուլոցից հետո նրանց խումբը մոտենում է թիրախներին: Ոմանք գոհ են, քանզի խոցել են տասնյակները: Մյուսներն էլ թեև վրիպել են, սակայն թևաթափ չեն լինում:

Վերջանում է պարապմունքը. աղջիկներին ու պատանիներին սպասում են ավտոբուսները, որոնք շարժվում են քաղաքի տարբեր ուղղություններով, դպրոց կամ տուն հասցնելով քաջազն Հայկի հետնորդներին:

ԷԴԻԿ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ԲՆԱԶԴ, ԹԵ՞ ԲԱՆԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ



Ուսումնասիրելով տարբեր կենդանիների վարքը կյանքի ամենատարբեր պայմաններում, կենդանաբանները հաճախ են հանդիպում այնպիսի երևույթների, որոնց բացատրությունը դժվար է գտնել: Թվում է, թե ոչ մի պարագայում կենդանիները այդպես չպետք է վարվեին: Բայց փաստերը առկա են և կենդանաբանների խնդիրն է գտնել դրանց ամենահավանական բացատրությունները:

Կենդանիները հիմնականում գործում են բնազդով: մենք այդ մասին արդեն բավականին տեղեկություններ ունենք: Այդ բնազդը տարբեր կենդանիների մոտ տարբեր ձևով է արտահայտվում: Որոշ տեսակներ բնազդի ապշեցուցիչ օրինակներ են դրսևորում, այնքան զարմանալի, որ դրանք ուղղակի կարելի է շփոթել բանականության հետ:

## ՄԻՋԱՏԸ ԳՈՐԾՈՒՄ Է ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՃՇՏՈՒԹՅԱՄԲ

Կենդանաբանները «կարծրաթևավոր» են անվանում բզեզներին: Երկրագնդի վրա հայտնի է բզեզների մոտ 300 հազար տեսակ: Դա մոտավորապես 6 անգամ ավելի է, քան բոլոր ողնաշարավոր կենդանիների տեսակները միասին վերցրած (ձկներ, երկկենցաղներ, սողուններ, թռչուններ, կաթնասուններ):

Կա բզեզի մի տեսակ, որին «մաթեմատիկոս-բզեզ» են անվանում. դա կեչու տերևաոլոր երկարակնճիթն է: Ընդամենը 3—4 միլիմետր երկարություն ունի՝ կնճիթից մինչև փորիկի ծայրը:

Իր սերունդների համար պատսպարան կառուցելիս այդ պստլիկ «փղիկը» ամեն անգամ «լուծում է» դժվարին ու բարդ երկրաչափական խնդիր՝ «կառուցել էվոլյուտներ էվոլվենտների տվյալներով» ընկըզբունքով:

Այդ խնդիրը «լուծելիս» բզեզը բարդ հաշվարկների և գծագրերի կարիք չունի: Բնազդը նրան հուշում է, թե ինչպես պետք է կտրել կեչու տերևը, որպեսզի այն ոլորվելով կոնաձև խողովակ դառնա: Հետաքրքիրն այն է, որ եթե կանաչ տերևի վրա էվոլվենտը ճիշտ է կառուցված, ապա նրանից ձևված և պատրաստված կոնուսը չի արձակվում, չի քանդվում: Մնացած բոլոր տարբերակների, նույնիսկ աննշան շեղումների դեպքում կոնուսը հեշտությամբ քանդվում-բացվում է:

Մայիսյան տաք օրերին տերևաոլոր երկարակնճիթի էգը գործի է անցնում: Տերևակոթունից մի փոքր հեռու (մաթեմատիկորեն հաշված միշտ տեղում) նա իր ամուր ծնոտները խրում է տերևի եզրի հյուսվածքների մեջ և տերևի մակերեսով ետ-ետ գնալով կատարում է առաջին աղեղնաձև կտրվածքը: Այնուհետև անցնում է տերևակոթունի մյուս կողմը և նույն ձևով մաթեմատիկական ճշտությամբ կտրվածք անում, միայն թե ավելի փոքր կորության աղեղով: Ավարտելով հիմնական աշխատանքները, երկարակնճիթը վերադառնում է այնտեղ, որտեղից սկսել էր կառուցման աշխատանքը և տերևի մի կողմի շերտը ոլորում է կոնուսի ձևով, կազմված 5—7 պարույրներից: Այնուհետև ճիշտ նույն ձևով ոլորում է տերևի մյուս հատվածը, միայն թե հակառակ կողմից: Ստացվում է ամուր կանաչ փաթեթատոպրակ: Բզեզն իսկույն նրա մեջ է մտնում և դնում 3—5 դեղնավուն ձու, այնուհետև դուրս է գալիս և ոլորելով փաթաթում է կոնուսի ծայրը՝ փակելով նրա մուտքը:

Այս չափազանց բարդ մաթեմատիկական աշխատանքը ընդամենը կես ժամ է տևում: Սակայն էգ բզեզիկը մեկ կոնուսով չի բավարարվում: Շուտով նման պատսպարաններ է վերածում երկրորդ, երրորդ տերևը, որքան ուժը պատում է:

Մինչ զարմանալի պատսպարանում ձվերից թրթուրներ են դուրս գալիս, սնվում տերևի հյութով, վրա է հասնում հարսնյակավորման ժամանակը, տերևը չորանում է, անձրևը և քամին պոկում են այն ու ծառից ցած գցում: Հենց այդ ժամանակ էլ չորացած պատյանի միջից թրթուրները դուրս են գալիս մտնում հողի մեջ, որտեղ և հարսնյակավորվում են: Գարնանը հարսնյակներից առաջանում են հաջորդ սերնդի «մաթեմատիկոսները»՝ հասուն բզեզները:

Ավելի զարմանալին այն է, որ այս «տաղանդավոր» բզեզը մաթեմատիկական ճշտությամբ նույնպիսի ապաստարաններ է կառուցում ոչ միայն կեչու, այլև բոխու, հաճարենու, լաստենու, տխլենու և այլ բույսերի տերևներից, որոնք ոչ միայն ձևով են տարբեր, այլև զանազանվում են ամրությամբ: Սա բնության ամենահետաքրքիր ու զարմանահրաշ գաղտնիքներից է: Մի՞թե միայն բնազդով կարելի է մաթեմատիկական նման բարդ խնդիրներ լուծել:

Պարզվում է, որ կարելի է:

## ԺՊԻՏՆԵՐ

Առաջին դասարանցի Բաբկենը այդ օրը տրամադրություն չուներ:

— Ի՞նչ է պատահել, տղաս,— հետաքրքրվեց մայրը:

— Մեր դասատուն ինձ բոլորովին չի խղճում,— բարկացած պատասխանեց նա և ապա շարունակեց,— ես միշտ դասս «հինգի» եմ պատասխանում, բայց նա ինձ «չորս» է նշանակում:

Մայրը ժպտաց և փորձեց հանգստացնել տղային, բայց Բաբկենը ավելի տրտնջաց:

— Ախր, մայրիկ ջան, մեր դասատուն, որ ինձ չի խղճում, գոնե թող քեզ խղճա, չէ՞ որ դասերս պատրաստելիս մենք միասին ենք չարչարվում:




Փոքրիկ Հռիփսիմեն դպրոցում մի քանի լեզու էր սովորում:

— Ինչի՞ս են պետք այդ լեզուները,— մի օր դժգոհեց նա:

Մայրը բացատրեց դրանց կարևորությունը և վերջում ավելացրեց.

— Ինչքան լեզու գիտես՝ այնքան մարդ ես:

Այդ դեպքից մի քանի օր հետո, երբ մայրիկը ցանկանում էր երեխաների համար պաղպաղակ գնել, Հռիփսիմեն ուրախ-ուրախ դիմեց նրան.

— Մայրիկ ջան, ինձ համար պետք է երեք պաղպաղակ գնես:

— Ինչո՞ւ,— զարմացավ մայրը:

— Որովհետև դպրոցում ես երեք լեզու եմ սովորում...

ՏԻԳՐԱՆ ԲԱԴԱԼՅԱՆ

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

● Ռեյ Բրեդբերիի մասին շատ է գրվել և միշտ անհրաժեշտ է համարվել ընդգծել մի հանգամանք. դեպի տիեզերք ֆանտաստիկ թռիչքների մասին գրքերի հեղինակը երբեք ինքնաթիռ չէր նստել: Եվ ահա, գրողն առաջին անգամ նստեց ինքնաթիռ: «Կարծում եմ, որ մոտ ապագայում դժվար թե նորից համարձակվեմ նրման բան անել,— վայրէջքից հետո ասաց նա,— ամբողջ ժամանակ ինձ թվում էր, թե ինքնաթիռը օդում էր մնում միայն իմ կամքի ուժի շնորհիվ»:



● Երեք տարի առաջ անգլիական թերթերում հայտնվեց հայտարարություն. «Բիթլոմանիա» ներկայացման գլխավոր դերերի կատարման համար պահանջվում են երիտասարդներ՝ ձայնով և արտաքինով նման «Բիթլզներին»:

Բազմաթիվ հավակնորդներից ընտրեցին չորսին և պարզվեց, որ ընտրությունը շատ հաջող է: Պոլ Մակկարտնին ներկայացումը դիտելուց հետո խոստովանեց. «Դա անհավանական է, բայց այսօր ես բեմում տեսա ինքս ինձ»:

Ընտրված քառյակը այժմ հանդես է գալիս «Բուտլեգ բիթլզ» («Իսկական բիթլզներ») անվանումով: Անսամբլը հյուրախաղերով շատ է հանդես գալիս, անցյալ տարի նրանք այցելեցին մեր երկիրը: Ովքեր եղել են նրանց համերգներին կամ դիտել են նրանց ելույթը հեռուստատեսությամբ, երևի կհամաձայնեն, որ Լենոնի և Մակկարտնիի երգերը «Բուտլեգ Բիթլզի» կատարմամբ հնչում են համարյա «բնագրի» նման:

● Լավագույն կոսմետիկան՝ ֆիզկուլտուրան է, գումարած ճիշտ սնվելն ու ռեժիմը: Այսպիսի խորհուրդ է տալիս ամերիկացի հայտնի կինոդերասանուհի Ջեյն Ֆոնդան այն կանանց, ովքեր ձգտում են լինել հրապուրիչ: Պարզվում է, նրանց թիվը քիչ չէ: Ֆոնդայի այդ թեմայով գրած գիրքը ԱՄՆ-ում անմիջապես սպառվեց: Մարզվելու համար նրա մարզադահլիճ կարող են գալ բոլոր ցանկացողները: Այցելուների պակաս չի զգացվում: Շատ մայրեր իրենց հետ բերում են նաև դուստրերին և անգամ դստրիկներին. չէ՞ որ որքան շուտ սկսեն, այնքան ավելի լավ:

● Ֆրանսիացի հանրահայտ հետազոտող Ժակ Իվ Կուստոն Ամազոն գետի ավազանում կատարած երկամյա գիտական ճանապարհորդությունից վերադարձավ հետաքրքիր տպավորություններով: Ճանապարհորդության ժամանակ նա հանդիպել է քաղցր ջրերում ապրող չափազանց «խելացի» վարդագույն դելֆինի գտել է կոկորդիլոսի հազվագյուտ տեսակ, որն իր ձվերը դնում է մրջնանոցում, որտեղ միջատները նրանց պահպանում են խիստ որոշակի ջերմաստիճանում: Իր արյունարբու վարքով հայտնի պիրանի ձուկը հանգիստ կեր էր ընդունում արշավախմբի անդամների ձեռքից և ագրեսիվության նշույլ անգամ չէր ցուցաբերում:

Հանձնված է արտադրության 29.06.1983 թ.։ Ստորագրված է տպագրության 13.09.1983 թ.։ ՎՖ 06933։ Թուղթ օֆսեթ։ 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,0 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 69562։ Պատվեր՝ 1885։ Գինը՝ 15 կոպ.։

Сдано в набор 29.06.1983 г. Подписано к печати 13.09.1983 г. Формат. 70×100 1/16. ВФ 06933. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч-изд. листа. Тираж 69562. Заказ 1885. Цена 15 коп.



# Ի՞ՆՉ ԳԻՏԵՔ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՄԱՍԻՆ

ՀՍՍՀ Կարմիր խաչի ընկերության Կենտկոմը հայտարարել է մրցույթ՝ «Ի՞նչ գիտես Կարմիր խաչի մասին» թեմայով: Ովքեր կպատասխանեն առաջարկված բոլոր հարցերին, կստանան պարգևներ և հուշանվերներ: Սահմանված են մեկ՝ առաջին, երկու՝ երկրորդ և երեք՝ երրորդ մրցանակներ: Պատասխանները ներկայացնելու ժամկետը սեպտեմբերի 15-ից հոկտեմբերի 15-ն է:

Պատասխանները ուղարկեք հետևյալ հասցեով. 375010, ք. Երևան, Ալավերդյան փ. 62, ՀՍՍՀ Կարմիր խաչի Կենտկոմ. մրցույթի ժյուրիին:

1. Ե՞րբ է հիմնադրվել սովետական Կարմիր խաչը:
2. Ո՞վ է Ռուսաստանում Կարմիր խաչի հիմնադիրը:
3. Ո՞վ է Անրի Դյունանը:
4. Ո՞ր թվականին է հիմնադրվել Կարմիր խաչը Հայաստանում:
5. Ե՞րբ է նշվում միջազգային Կարմիր խաչի օրը:
6. Ի՞նչ նշանաբանով է անցնում Կարմիր խաչի միջազգային օրը 1983 թվականին:
7. Ի՞նչ է «Սանիտարական պոստը», ի՞նչ նպատակի է ծառայում դպրոցում, որքա՞ն մարդ է մտնում դրա կազմի մեջ:
8. Ինչո՞վ է զբաղվում ձեր դպրոցում Կարմիր խաչի սկզբնական կազմակերպությունը:
9. Կարո՞ղ ես օգնություն ցույց տալ քո ընկերոջը, արունքի վնասվածքի դեպքում:
10. Եթե ձեր ընկերոջ քթից արյունահոսություն է սկսվել, ինչպե՞ս նրան կօգնես:
11. Ինչպե՞ս կօգնես ընկերոջդ, եթե ստացել է 2-րդ աստիճանի այրվածք:

ՀՍՍՀ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ԸՆԿԵՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄ





ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15:
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015. Ереван-15. ул. Кармир банаки. № 15.

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.                                   ԻՆԴԵՔՍ՝ 77806



**«ՄԱԳԴԱԼԵՆԱ ԴՈՆԻԻ ԴԻՄԱՆԿԱՐԸ» 1506 Թ.**
**ԱՅՍ ՏԱՐԻ ԼՐԱՆՈՒՄ Է ԻՏԱԼԱՑԻ ՀԱՆՃԱՐԵՂ ՆԿԱՐԻՉ ՌԱՖԱՅԵԼԻ ԾՆՆԴՅԱՆ 500-ԱՄՅԱԿԸ:**